1915 № 1.—Դեկտեմբերի 20 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ռ. 50 կ.: Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ գիւղացիների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ռ., կէս տարուան 2 ռ.: Արտասահման՝ տարեկան 5 ռ. կէս տարուան 3 ռ.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտաշարդեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է ամէն օր ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։ Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։ Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։ Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների մասին խմբագրութիւնը պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## *ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ 1916 Թ.*

## ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ԳՐԱԿԱՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

*ԾՐԱԳԻՐ. 1. Պաշտօնական տեղեկութիւններ, կառավարչական կարգադրութիւններ, Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան Կենտրոնական Խորհրդի ու ճիւղերի հաշիւները, որոշումները, արձանագրութիւնները և շրջաբերականները. 2. Հեռագիրներ, ներքին և արտաքին տեսութիւններ, հասարակական, կուլտուրական և գիտական բովանդակութեամբ յօդուածներ, գրական նորութիւններ և պատմական տեսութիւններ, վիպակներ, պատմուածքներ, ոտանաւորներ և քննադատութիւն. 3. Քրոնիկոն, տեղեկութիւններ, կենսագրութիւն և մատենախօսութիւն. 4. Արուեստ, թատրոն, երաժշտութիւն և նկարներ. 5. Փոստարկղ և յայտարարութիւն։*

*Թերթը բաղկացած կլինի 16 մեծադիր երեսներից և-լոյս կտեսնէ կիրակի օրերը։*

*ՄԻՆՉԵՒ ԱՅԺՄ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ ԵՆ ՏՈՒԵԼ ԱՇԽԱՏԱԿՑԵԼՈՒ «ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»-ԻՆ*

*Աբեղեան Մանուկ, Ալթունեան Գէորգ, Աղասարեան Բողդան (բժշկապետ), Այվազեան Բագրատ, Բաշինջաղեան Գէորգ (նկարիչ), Բերբերեան Մինաս, Դեմիրճեան Դերենիկ, Եսայեան տիկ. Զապել, Եղիշեան Գուրգէն, Թումանեան Մարիամ իշխ., Թումանեան Միքայէլ իշխան, Թումանեան Յովհաննէս, Լէօ, Խանզադեան Ցոլակ, Կանայեանց Ստ., Կարապ (Թաշճեան Կ.), Ծուղուրեան Յարութիւն քահանայ, Մալխասեան Ստեփան, Մանուէլեան Միքայէլ, Մուղնեցեան Մամբրէ, Մուրադյեան Հ., Յովհաննիսեան Միքայէլ, Յարութիւնեան Իսահակ, Յովհաննիսեան Հայկ, Նար-Դոս, Նաւասարդեան Բագրատ (բժշկապետ), Շարաֆեան Ալեքսանդր, Շիրվանզադէ, Ջամալեան Արշակ, Սպենդիարեան Յովհաննէս, Տէր-Դանիէլեան Դաւիթ, Տէր-Գրիգորեան Վահան, Տէր-Միրաքեան Յովհաննէս, Փիրալեան Յարութիւն, Փիրումեան Տիգրան, Քամալեան Սարգիս, Օլթեցեան Արամ։*

*Բաժանորդագինն է տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ռուբլի 50 կ., Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ գիւղացիների, ուսուցիչների, հայ հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ռուբլի, կէս տարուան 2 ռուբլի։ Արտասահման 5 ռուբլի, կէս տարուան 3 ռ.։*

*Բաժանորդագրութիւն ընդունում է խմբագրատանը, Թիֆլիս, Արտաշարդեան հրապարակ, № 7 և ընկերութեան գաւառական ճիւղերի վարչութիւններում։*

Խմբագիր՝ Ս. Յարութիւնեանց

Հրատարակիչ՝ Կովկասի Հայոց Բարեգործ. Ընկերութիւն

„Համբաւաբեր"-ի № 2-ը լոյս կը տեսնի 1916 թուի յունուար 3-ին, կիրակի օրը:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՄԵՐ ԴԱՒԱՆԱՆՔԸ

Մեր երկրի շատ յուշարձանների վրայ, մեր ձեռագրական շատ ու շատ յիշատակարանների մէջ մեր նախնիքները տեղեկութիւն են թողել ապագայ սերունդներին թէ «դառն ու նեղ» է եղել իրանց ժամանակը։ Այս երկու պարզ ածականներով յիշատակուած են մեր պատմութեան ամենադարհուրելի շրջանները։ Մի տեղ նրանք թաթարական արշաւանքներն են ակնարկում, միւս տեղ՝ Լէնկթեմուրի, մի տեղ թիւրքմէնների տիրապետութիւնը, մի այլ տեղ Շահ Աբբասի գերեվարութիւնը։ Մի տեղ օսմանեան կոտորածները, միւս տեղ՝ քրդական խժդժութիւնները . . .

«Դառն ու նեղ» է և այսօրուան օրը, երբ երեւան է գալիս մեր շաբաթաթերթը հայ լրագրութեան ասպարէզում։ Դառն ու նեղ ժամանակ ամբողջ աշխարհի համար։ Երբէք կոպիտ ոյժը այնքան չէ բարձրացել մարդկային բանականութիւնից վեր, այնքան կատաղութիւն չէ դարգացրել՝ ազգեր ու ժողովուրդներ բնաջինջ անելու, աշխարհի երեսից անհետացնելու համար։ Եւ երբէք «վայ թոյլերին» աղաղակը այնքան զարհուրեցուցիչ չէ եղել, ինչպէս այժմ, այս անօրինակ ահռելի պատերազմի միջոցին։ Հին աշխարհը սարսափով ճանաչում էր արիւնի և գազանութեան մի պաշտամունք, որի անունն էր Մողոք։ Բայց այդ հին արիւնարբուն նսեմացել, մի ողորմելի խեղճութիւն է դարձել այսօրուայ Մողոքի առջև, որ կոչւում է միլիտարիզմ։

Պատերազմական դոռ փոթորիկները արեգակի տակ տարածել են գիւղերի, աւանների, քաղաքների, ամբողջ ազգերի աւերակներ։ Այս աւերակների թւումն է և հայ ժողովուրդը։

Չը ծանրանանք մեր կացութեան մանրամասնութիւնների վրայ։ Ում չեն նրանք յայտնի։ Անցեալ օրերը անգլիական պարլամենտում յայտարարւում էր, թէ աշխարհը դեռ չէ տեսել այնպիսի մի ոճիր, որ նիւթեց թիւրքահայ ժողովրդին «Թիւրք կառավարութիւն կոչուող սրիկաների մարդասպան վոհմակը»։ Աշխարհի առաջնակարգ ազգի պետական ամենաբարձր ատեանում արտասանուած այս խօսքերից աւելին ինչ կարելի է գտնել՝ մեր ներկայ վիճակը արտայայտելու համար։

Մենք արդէն գիտենք դարհուրելի ճշմարտութիւնները։ Մենք խոչընդոտ ենք գերման-թիւրքական առաջխաղացութեան համար և վճռել են մեզ բնաջինջ անել, մեր երկիրը խլել մեր ձեռքից և մեր ողորմելի մնացորդները ցիր ու ցան անել աշխարհի զանազան կողմերը։ Մինչև այսօր չեն խնայել մեզ։ Պիտի չը խնայեն և այսուհետև . .

Եւ այս ահռելի ճակատագրի առջև բնականօրէն ծառանում է դաժան հարցը.—ինչ անել. . .

Մեր ճակատագրի հարուածները չափազանց շշմեցուցիչ էին։ Տեսանք մենք այնպիսի սարսափներ, որոնց առջև զարմացաւ նոյն իսկ մեր պատմութիւնը, որ շաղախուած է արտասուքներից ու արիւնից։ Եւ առաջացաւ լքում, վհատութիւն։ Մենք կորցրինք հաւատը, մենք ասում էինք մեզ, թէ ամեն ինչ վերջացաւ, և հայութիւնը վերանում է աշխարհից . . . Ուրիշ կերպ չէր կարող լինել։ Մենք չափազանց փոքր ենք իբրև ազգութիւն, թոյլ ենք իբրև կազմակերպութիւն։ Փոքրերը, թոյլերը, եթէ անհետ կորչում են, հէնց այդ լքման և յուսահատութեան պատճառով է։ Ներքին լքումը մահ է, աւելի արագահաս ու անխուսափելի, քան այն մահը, որ կարող է բերել արտաքին ահեղ հարուածը։ Յուսահատութիւնը սպանիչ է նոյն իսկ հուժկու ազգի համար։ Ուրիշ բան է, երբ յուսահատական հանգամանքները ծնեցնում են չը յուսահատուելու պողպատէ վճռականութիւն։ Այս դէպքում է որ թոյլ մարդն էլ բարձրանում է մինչև հերոսութիւն։

Մեր փրկութիւնը այս ճշմարտութիւնը գիտակցելու մէջ է։ Եւ այս է մեր հիմնական դաւանանքը ներկայ րոպէին։ Լքման, թուլութեան խօսքը չէ որ մենք ուզում ենք բերել մեզ հետ։ Չենք էլ ուզում վարդագոյն, անառարկայ լաւատեսութեամբ քնարեր օրօրներ կարդալ։

Անյատակ է, այո, մեր դժբախտութիւնը։ Բայց եթէ նրան դիտենք ուղիղ հայեցակէտից, չենք սարսափի և չենք յուսահատուի նրանից։

Հայ ժողովրդի համար դարբնուել է արդէն որոշ ու հաստատուն դիրք։ Իր ճակատագիրը նա վերջնականապէս և անդառնալի կերպով կապել է Ռուսաստանի և նրա դաշնակիցների հետ, որոնք կռւում են գայլի բարոյականութեան դէմ։ Նրանց յաղթութիւնը կը բերի ազատ շունչ քաշելու, մի կտոր արևով ջերմանալու անկիւն և հայութեան համար։ Ուրիշ ակնկալութիւն չը կայ և չէ կարող լինել։



Մենք տառապում ենք այդ ակնկալութեան մէջ, մենք զարհուրելի զոհեր տուինք և տալիս ենք։ Այս ճիշտ է։ Բայց պատճառն այն է, որ շատ ծանր է Ռուսաստանի և նրա դաշնակիցների գործը... Յաղթութիւնը պէտք է ձեռք բերուի մեծամեծ զոհողութիւններով։ Եւ արդէն քանի մեծ ազգեր յանձն են առել ամեն տեսակ տառապանք ու անձնազոհութիւն վերջնական յաղթանակին հասնելու համար։ Ռուս մեծ ժողովրդի ջանքերն անօրինակ են և կրած զրկանքները հսկայական։ Անգլիացին՝ ֆրանսիացին, իտալացին, բելգիացին, սերբը- ամեն տեղ ամենքը տանջւում են, զոհւում են։ Վարդերի վրայ չէ հանգչում և հակառակորդ պատերազմող կողմը. գերմանացու, թիւրքի և դրանց միւս դաշնակիցների դրութիւնն աւելի ծանր է։

Մի խօսքով, համաշխարհային մեծ աղէտի մէջ է մարդկութիւնը։ Պատերազմ է։ Եւ այս դրութեան համար է որ մեր ժողովուրդը կազմել է մի իմաստուն առած. «կռուի մէջ, ասում է նա, չամիչ չեն բաժանում»։ Աղէտներին, ցնցումներին դիմանալ և դիմադրել կարող են միայն նրանք, որոնք գիտեն համբերել, տոկալ, յամառ լինել։ Դարձեալ մեր ժողովուրդն է, որ ասում է. «Ձին է եկել որ ոտները մրսեն»։

Այսպիսի կենսաբեր դիմացկունութիւն ձեռք է բերւում յամառ ու տոկուն աշխատանքով։ Եւ այս աշխատանքին պիտի նուիրուեն մեր բոլոր ույժերը. մեր ամբողջ ուշադրութիւնը։ Վատոյժ, հիւթերից զրկուած օրգանիզմը չէ կարող ապրելու ապահովութիւն ունենալ այսպիսի մի աղէտաւոր ժամանակ, երբ հարիւրաւոր հանգամանքներ անողոք և կատաղի թշնամիների պէս շրջապատել են նրան։

Նայենք մեր ճակատագրի երեսին անթարթ աչքերով, դիտենք նրան խոր ուսումնասիրողի, վերլուծողի սառնասրտութեամբ։ Այսպիսով մեզ համար կը բացուի գիտակցութեան ճանապարհը, որ կը տանէ մեզ դէպի մեր բոլոր ույժերի համախմբումը։ Մենք չը պէտք է թոյլ տանք, որ ժողովրդական եռանդի մի կաթիլ անգամ զուր վատնուի, կորչի աննպատակ։ Զէնքի կանչենք մեր համայնական ամբողջ կարողութիւնը, որ պէտղի հնարաւորութիւն գտնենք որքան կարելի է քիչ զոհեր տալու մեր դաժան ժամանակին, որպէս զի ապրենք մինչև այն ժամը, երբ համաշխարհային պատերազմը վերջ կը տանայ ազգերի ազատութեան սկզբունքի յաղթանակով։

Քանի որ մեր ժողովրդի ազգային գոյութեան հարցն է այս բոպէին դրուած, պէտք է որ ազգի բոլոր մասնիկները միացնեն իրանց եռանդն ու կարողութիւնը՝ մի միաբանութիւն ստեղծելու համար։ Սովորենք մեծ ազգերից։

Ամեն տեղ լռել են ներքին անհամաձայնութիւնները, գաղափարական շփումները։ Ամեն տեղ տեսնում ենք մի բան միայն—թշնամուն, որ մահ է նիւթում։ Ամեն տեղ յանցանք է համարւում ներքին համաձայնութեան կապերը թուլացնելը։

Մեզանում էլ պիտի արմատանան և իրական գործի, կուռ կազմակերպութեան մէջ մարմնանան այս բարեբար սկզբունքները։ Եւ մինչև որ չը տոգորուենք նրանցով ամենքս մինչև որ մեր ինքնօգնութիւնը չը դառնայ մեր ինքնապաշտպանութեան կռուանն ու հիմքը, մեզ համար — հաւատանք — փրկութիւն չը կայ այս համաշխարհային աղէտի մէջ, ուր ամեն ինչ տեղի է տալիս ույժին, և ուր ույժն է միայն որ ապրելու իրաւունք է տալիս։ Այս օրէնքը միայն պատերազմի դաշտում չէ թագաւորում, այլ և այն ժողովուրդների մէջ, որոնց բախտը կապուած է պատերազմական դաշտի հետ։ Այստեղ ույժը հրացաններ ու թնդանօթները չեն, այլ ներքին միաբան աշխատանքը։

Այս դաւանանքով ենք հրապարակ գալիս մենք։ Եւ նրան է որ պիտի ծառայենք ամենայն ճշմարտութեամբ, որքան թոյլ է տալիս մեզ մեր կարողութիւնը։

---

# Ներքին տեսութիւն

## ՊԵՏԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Ամեն ինչ յաղթութեան համար. — Համաշխարհային ահեղ պատերազմին մասնակցող բոլոր պետութիւնների ներքին կեանքը միմիակ մի խոշոր, առաջնակարգ կենսական հարց է ներկայացնում — ինքն այդ պատերազմը։ Մարտական փոթորիկները մոռացրել են բոլոր միւս հարցերը, խեղդել են բոլոր առօրեայ շահերը։ Եւ հասկանալի է թէ ինչու։ Ներկայումս կարող է լինել միայն ազգերի պատերազմ։ Միլիոնաւոր մարդիկ են կանգնած հրացանի տակ, այսինքն ամբողջ զինուած ժողովուրդներ։ Նրանց յաջողութիւնը պատրաստւում է ամբողջ երկրի գործակցութեամբ։ Տանը մնացածը պատերազմի դաշտում կռուողի աշխատակիցն է։ Մէկն առանց միւսի չէ կարող յաջողակ լինել...

Այսպէս է ամեն տեղ։ Ռուսաստանը, ինչպէս մի ահագին պետութիւն, կրում է ներկայ պատերազմի ծանրութեան ամենախոշոր մասը և, բնականաբար, պիտի լարէ իր բոլոր ույժերը, ունենալով իր առջև ռազմական մի ճակատ, որ Ռիգայի ծոցից Ռումինիայի վրայով քերում է Սև ծովի արևմտեան և հարաւային ափերը, ձգւում է այստեղից մինչև Վանի լճի հարաւային ափը և մինչև պարսկական Համադանը։ Այսքան անհուն տարածութիւնների վրայ պատերազմ մղելով, մեր պետութիւնը, բնականաբար, ամեն ինչ պիտի տայ այդ ահաւոր մրցութեան։ Այս պատճառով էլ ներկայումս ռուսական ներքին կեանքի մէջ էլ առաջնակարգ կարևորութիւն ունին միայն այն հարցերը, որոնք կապուած են պատերազմի հետ։

Օրէնսդրական հիմնարկութիւնները. Տարուայ այս ժամանակ սովորաբար օրէնսդրական բարձր հիմնարկութիւնները — Պետական Դուման և Պետական Խորհուրդը — ձմեռային նստաշրջանի զբաղմունքներն ունէին։ Այժմ չը կան նրանք։ Ամառուայ վերջին Պետական Դուման արձակուած էր այն պայմանով, որ նորից նստաշրջանի հրաւիրուի նոյեմբերից ոչ ուշ։ Բայց նոյեմբերին Բարձրագոյն ուկազով յետաձգուեց Դումայի բացումը անորոշ ժամանակով այն պատճառաբանութեամբ, որ դեռ պատրաստ չէ պետական բիւջէն։

Այս քանի օրերը ներքին գործերի մինիստր Խվոստովը յայտնել է մամուլի ներկայացուցիչներին թէ Դուման, երևի կը բացուի յունուարի վերջերին և նրա պարապմունքների առարկան կը լինի, երևի, միայն բիւջէի քննութիւնը և պատերազմական գործերին վերաբերեալ մի քանի հարցեր։ Ներքին միւս հարցերը և բարենորոգումները, ասել է մինիստրը, պէտք է յետաձգուեն մինչև որ խաղաղ ժամանակներ կը գան։ Կառավարութեան վերաբերմունքը դէպի Դումայի ապագայ զբաղմունքները բնորոշւում են մինիստր Խվոստովի այն յայտարարութեամբ, թէ Դումայի

այն նիստերը, ուր քննադատւում են կառավարութեան գործողութիւնները, պիտի դռնփակ լինեն։

Բարձրագոյն մի ուրիշ ուկազով յետաձգուեց և Ֆինլանդական սէյմի բացումը։

Մինչև Դումայի նիստերի վերսկսումը՝ Տաւրիկեան պալատի շէնքում նիստեր ունի բիւջէտային յանձնաժողովը, որ նախապէս քննում է պետական բիւջէն և համապատասխան զեկուցում է կազմում։ Յանձնաժողովի նիստերին բացատրութիւններ են տալիս կառավարութեան ներկայացուցիչները ներքին և արտաքին քաղաքականութեան վերաբերմամբ, և այդ բացատրութիւնների մի մասը հաղորդւում է մամուլին։ Այսպէս, վերջին նիստերից մէկում երկար բացատրութիւններ տուել է արտաքին գործերի մինիստր Սազոնովը բալկանեան հարցի, Պարսկաստանի գործերի վերաբերմամբ։

*Ուժեղ իշխանութիւն.* — Կառավարութեան կողմից ընդունուած քաղաքականութեան մի բնորոշ գիծն էլ պարզ շեշտել է ներքին գործերի մինիստր Մակլակովը վերևում յիշատակուած իր խօսակցութեան մէջ։ Այդ այն է, որ կառավարութիւնը պիտի գործադրէ ուժեղ իշխանութեան սկզբունքը. ամեն դէպքում երևան հանելով խիստ նախազգուշական և զսպիչ միջոցներ հէնց որ կը նկատուի որ և է ներքին խլրտում։

*Ներքին փոխառութիւն.* — Պատերազմական պէտքերի համար մի միլիարդ րուբլի փոխառութեան ստորագրութիւն էր բացուած բոլոր բանկային և վարչական հաստատութիւնների մէջ։ Ստորագրութիւնը փակուեց երէկ, դեկտեմբերի 19-ին։

*Պարենաւորում.* — Պատերազմի առաջացրած սարսափելի թանկութեան դէմ կռուելը վաղուց դարձել է պետական մեծ անհրաժեշտութիւն։ Այս նպատակով Ռուսաստանի զանազան կողմերում կազմուած են յատուկ մարմիններ։ Համապետական նշանակութիւն ունին այն խորհրդակցութիւնները, որոնք կազմուած են Պետրոգրադում ներքին գործերի և հաղորդակցութեան ճանապարհների մինիստրութիւններին կից։ Առ այժմ այդ խորհրդակցութիւնները շօշափելի փոփոխութիւններ չեն մտցրել դրութեան մէջ։ Գների կամայական ու արհեստական բարձրացման դէմ ցանկալի է համարուել որ սակագներ հաստատուեն բոլոր անհրաժեշտ մթերքների համար։ Աւելի մեծ նշանակութիւն ունի հաղորդակցութիւնների հարցը։ Մթերքներով և պաշարներով հարուստ է Ռուսաստանը, բայց փոխադրական միջոցներ չը կան, երկաթուղիների վրայ տիրում են անկարգութիւններ։ Ամենակարևորն է երկաթուղիներին բաւականաչափ վագոններ մատակարարելը պարենաւորման մթերքներ փոխադրելու համար։ Այս խնդրով զբաղուած է մի յատուկ խորհրդակցութիւն Պետրոգրադում։

*Մանր փողեր.* — Շարունակ զգացւում է մանր փողի պակասութիւն, որ մեծ անյարմարութիւններ է պատճառում ազգաբնակութեան։ Կառավարութիւնը, այդ պակասութիւնը վերացնելու նպատակով, հրատարակել է 50 միլիոն ռուբլու թղթէ մարկաներ։ Այժմ նորից պատրաստւում են այս տեսակի մանր փողեր 30 միլիոն ռուբլու։

## ԿՈՎԿԱՍԵԱՆ ԳՈՐԾԵՐ

*Զեմստւօ.* — Դեկտեմբերի 8-ին բիւջէտային յանձնաժողովում քննւում էր ռուս գաղթականների գլխաւոր վարչութեան նախահաշիւը։ Կովկասեան պատգամաւոր Չխէիձէն հարց բարձրացրեց Կովկասում զեմստւօ մտցնելու մասին, ասելով, թէ այդ անհրաժեշտութիւնը վաղուց է զգացուած նոյն իսկ Կովկասեան տեղական իշխանութեան կողմից։ Երկրագործութեան մինիստրի օգնականը դրա դէմ առարկեց թէ Կովկասում բնակեցրած ռուս գաղթականները դեռ չեն հասունացել ինքնավարութիւն ստանալու համար։

Ինչպէս յայտնի է, Կովկասում զեմստւօ մտցնելու կողմնակից է և այժմեան Փոխարքայ Մեծ Իշխան Նիկոլայ Նիկոլաևիչը։

## ԹԻՖԼԻՍԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Ներկայումս պատրաստութիւններ են տեսնւում Թիֆլիսի քաղաքային դումայի կազմը վերանորոգելու համար։ Նոր ձայնաւորների ընտրութիւնները տեղի կունենան առաջիկայ յունուարին։ Նախընտրական պայքարը, ինչպէս երևում է, դարձեալ հիմնուած պիտի լինի ազգային սկզբունքի վրայ, մի սկզբունք, որ, ինչպէս ցոյց են տուել նախորդ տարիների փորձերը, կատարեալ դժբախտութիւն պիտի համարել քաղաքի համար։ Ցանկալի է, որ ընտրութիւններին ղեկավարող սկզբունք լինին միայն քաղաքի ազգաբնակութեան շահերը։

Այս հարկաւոր է մանաւանդ այժմ, երբ կենսական մթերքների թանկութիւնը օրէցօր սպառնական կերպարանք է ընդունում, իսկ քաղաքային ինքնավարութիւնը համարեա միանգամայն անընդունակ է հանդիսանում ստեղծագործական աշխատանք առաջացնելու այս վտանգի դէմ։

*Թիֆլիսի տրամուայը.* — Թիֆլիսի շրջանային դատարանի վճռով իրաւունք է տրուած Թիֆլիսի քաղաքային վարչութեան այժմ իսկ յետ գնել Բելգիական ընկերութիւնից Թիֆլիսի տրամուայը, ըստ պայմանի։ Ամբողջ ձեռնարկութիւնը քաղաքային ինքնավարութեան ձեռքը կանցնի, ինչպէս կարծում են, մօտ օրերս։

## ՀԱՅԿԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Հայ կեանքի բոլոր փոքր ի շատէ աչքի ընկնող երևոյթները կենտրոնացած են այն հիմնարկութիւնների մէջ, որոնք զբաղուած են թիւրքահայ գաղթականներին պատսպարելու մեծ գործով։ Այդ հիմնարկութիւնների գործունէութիւնը մենք յոյս ունինք հետզհետէ պատկերացնել մեր թերթի մէջ հնար եղած մանրամասնութեամբ։ Առ այժմ շեշտում ենք մի քանի փաստեր։ Բաքւում գաղթական որբերի օգտին հրատարակուեց միօրեայ «Նուէր որբերին» մի թերթ հայերէն և ռուսերէն լեզուներով։ Թերթը տպուեց 10 հազար օրինակ և սպառուեց մի օրուայ ընթացքում, տալով արդիւնք մօտ 3000 ռուբլի։ Այդպիսի մի «Մամուլի օր» պատրաստւում է և Ալեքսանդրապոլում, «Գաւառի Ձայն» թերթի նախաձեռնութեամբ։

— Բաքուի գաղթականական Բիւրոյի և Հայ ուսուցչական Միութեան ջանքերով բացուած է Հայոց թաղ արուարձանում յատուկ դպրոց գաղթական երեխաների համար։ Այդ գեղեցիկ ձեռնարկութիւնը, ինչպէս տեղեկանում ենք «Հորիզոնի» թղթակից պ. Ֆրանգեանի նկարագրութիւնից, լաւ հիմքերի վրայ է դրուած և ծախսում է տարեկան մօտ 11 հազար ռուբլի։

— Հայոց թատրոնը Թիֆլիսում այս թատրոնական սեզոնին դարձեալ պատահականութիւնների ճակատագրին էր մատնուած։ Դրամատիկական Ընկերութիւնը, միջոցների պակասութեան պատճառով, հրաժարուեց դերասանական խումբ պահելու մտքից, և դերասանները ստիպուած եղան իրանց ուժերով գործելու և կազմեցին ընկերակցութիւն։ Այժմ պ. Յովսէփ Մանթաշեանը յանձն է առել երեք տարուայ ընթացքում 5000-ական ռ. նպաստ տալ հայոց թատրոնին, և այսպիսով հայ բեմը ապահովւում է գէթ երեք տարի ժամանակով։

---

## Հ. Ֆ. Պ. ԼԻՆՉ

«Հայաստան, ուղեւորութիւններ և ուսումնասիրութիւններ», թարգմանիչ Լեւոն Լարենց, «Ա. հատոր — Ռուսական Հայաստան», Կ. Պոլիս, 1914, եր. 464. մեծ ութածալ, գինը 2 1/2 րուբլի։

Եթէ հայ ժողովուրդը օտար ազգերի մէջ երբ և իցէ ունեցել է տաղանդաւոր բարեկամներ և մեծ բարերարներ, դրանց մէջ առաջիններից մէկն է անշուշտ Հէնրի Ֆինիս Բլօս Լինչը, այժմ հանգուցեալ։ Այս ազնուասիրտ և բազմակողմանի զարգացած անգլիա-

ցին յաւիտենապէս պարտաւորեցրել և երախտապարտ է դարձրել հայ ազգը իր մի խոշոր հոյակապ գրքով, որի անունը գրուած է յօդուածիս ճակատին, և որ բաղկացած է երկու հատորից։ Այս աշխատութեան մէջ հայ հայ հայրենիքն է ներկայացուած իր ժողովրդի հետ—բնութիւնը, երկիրը, նրա անցեալը, նրա ներկան, ընդարձակ չափերով։

Այսպիսի մի մեծ նիւթ լիովին ընդգրկելու համար Լինչը ունեցել է մի հեղինակի բոլոր բարեմասնութիւնները. նա տաղանդաւոր նկարագրող է, գեղեցիկ, բանաստեղծական, գրաւիչ, լաւատեղեակ, ստեղծագործող գիտնական է՝ խորագննին լրջութեամբ և նուրբ վերլուծական կարողութեամբ... Հայաստանի աշխարհագրութեան, պատմութեան և ներկայ կեանքին հմուտ մարդն անգամ չէ կարող բարձր զարգացման տէր այդ ճանապարհորդի գրութեան մէջ սխալ, թիւր ըմբռնումներ, վրիպումներ և այլ այնպիսի պակասութիւններ, որոնք աչքի ընկնէին։ Լինչը հիանալի կերպով ուսումնասիրել է թէ բնութիւնը և թէ գրականութիւնը. նա կարող չէ ուրիշներից դասեր առնելու՝ ինքն է, ընդհակառակն, հեղինակաւոր վճռադատ, որի մօտ պիտի գնան խնդրողներն ու որոնողները։

Հայ հայրենիքին նա խոշոր գիտական ծառայութիւններ է արել, ճշտելով շատ անյայտ կամ շատ քիչ յայտնի աշխարհագրական դիրքեր։ Տեղն ու տեղը կատարուած աշխատանքների հետեւութեամբ, որ նա տուել է Հայաստանի խոշոր աշխարհագրական քարտէզը, լաւագոյնը մինչև այժմ եղածների մէջ։ «Հայաստանի» անգլիական հրատարակութիւնը մի ճոխ ու բազմարուեստ գործ է, մեծաքանակ պատկերներով, տեսարաններով ու քարտէզներով զարդարուած։ Լինչը ոչինչ չէ խնայել, որ իր աշխատութիւնը բովանդակութեան և արտաքինի կողմից լինի ամենալաւը և անգերազանցելին։ Եւ իրաւ, մինչև այժմ Հայաստանին վերաբերեալ ոչ մի հրատարակութիւն չէ կարող համեմատուել անգամ Լինչի «Հայաստանի» հետ։ Եւ երկար ժամանակ էլ այդպէս անփոխարինելի պիտի մնայ նա։ Հայ հնութիւնները, հայ պատմութիւնը լաւագոյն կերպով են ներկայացուած պատկերների և լուսաբանութիւնների մէջ։ Եւ այսօր ամեն մէկը, որ կարիք է զգում իմանալու, թէ ինչ է հայն ու Հայաստանը, պիտի ձեռքն առնէ Լինչի աշխատութիւնը։ Ուրիշ այդպիսի մի լուրջ ու հեղինակաւոր աղբիւր չը կայ։

Այդ հոյակապ գործը թարգմանուած է եւրոպական լեզուներով։ Ռուսերէն թարգմանութիւնը, բնագրին շատ մօտեցող ճշգրտութեամբ, լոյս տեսաւ Թիֆլիսում հինգ տարի առաջ, 1910-ին։ Չը կար միայն հայ թարգմանութիւնը և մշտապէս զրկուած հայ ընթերցողը միջոց չունէր ծանօթանալու իր անգլիացի մեծ բարեկամի կլասիք աշխատութեան։ Ստացւում էր մի վերին աստիճանի վիրաւորական հանգամանք։ Ռուսահայերը չը կարողացան վերացնել այդ մեծ անպատեհութիւնը, նրանց առհասարակ չեն յաջողւում գրական խոշոր ձեռնարկութիւնները։ Եւ Կ. Պոլսին էր, որ եկաւ բաւական լաւ կերպով լուծելու այդ հարցը։

Պ. Լեւոն Լարենցի այս գործը մի շատ աչքի ընկնող և ողջունելի ձեռնարկութիւն է, որ պատիւ է բերում Թիւրքահայ գրականութեան։ Թարգմանութիւնը կատարուած է անգլիերէն բնագրից, պարզ և կանոնաւոր լեզուով, կարդացւում է հեշտութեամբ և ախորժանքով։ Տպագրութիւնը շատ մաքուր է, ողորկ թղթի վրայ։ Միայն լաւ յաջողուած չեն բոլոր պատկերները, որոնք բազմաթիւ են։ Արտաքինի կողմից չէ կարող նոյն իսկ ռուսերէն հրատարակութեան նմանութիւնը բերել։

Բայց հայ ընթերցողը անկասկած գոհ կը մնայ իրան ընկած բաժնով, որ բնագրի համեմատութեամբ շատ համեստ է և չէ կարող այդպէս չը լինել։ Այդ համեստութեան պատճառով է, ի հարկէ, որ մինչդեռ անգլիերէն և ռուսերէն հրատարակութիւնները արժեն 18–20 րուբլի, հայերէնի այս հատորն արժէ 2 ր. 50 կոպէկ, որ բոլորովին թանգ չէ։

Ինչպէս երևում է, պ. Լարենց չէ կարողացել, եւրոպական ահաւոր պատերազմի պատճառով, հրատարակել երկրորդ հատորը—դժբախտ թիւրքական Հայաստանը։

Իր առաջաբանի մէջ թարգմանիչն ասում է թէ հայերն էլ չեն ճանաչում իրանց հայրենիքը, այս պատճառով էլ Լինչի գիրքը ամենից շատ հէնց հայերին է հարկաւոր Հայաստանը ճանաչելու համար։

Հազար անգամ ճիշտ են այս խօսքերը։ Լ.

---

## ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՆՈՐ ՏԱՐԻՆ

Հին տարին ահա վերջանում է և մտնում է նոր տարին նոր անորոշ ակնկալութիւններով։ Ուրախ են ամենքը, որովհետև մարդս միշտ յուսով է ապրում, քանի որ որքան էլ «աշխարհը ծերանում և երիտասարդանում է, ինչպէս ասում է բանաստեղծը, սակայն մարդը յոյս ունի բարւորման»։ Հէնց այս յոյսն է, որ այժմ է տալիս մարդկանց կեանքի ձախորդութեանց դիմադրելու և վարդագոյն ապագայի տենչանքով ապրելու։ Ուրախ են ծեր և տղայ։ Ամեն տան մէջ պատրաստութիւն է տեսնւում, ամեն մի ծնող աշխատում է որ և է բանով ուրախացնել իր զաւակներին։

Իսկ մեր փախստականները... արդեօք ինչ յոյս, ինչ սպասելիքներ ունեն նոր տարուց։

Անցաւ սկզբնական ոգևորութիւնը, ձանձրացաւ մեր ժողովուրդը, էլ քիչ է հետաքրքրւում փախստականներով... բայց չէ որ նրանց կարիքները մնացին նոյնը, չէ որ նրանք էլ ապրել կուզեն։ Ձմեռը վրայ հասաւ, ահեղ ցուրտ, մարդիկ կիսամերկ, կիսակուշտ, իսկ նրանց սրտերը... որքան մռայլ է և վշտահար։

Քանի քանի մայրեր ողբում են իրենց զաւակներին, քանի քանի զաւակներ կանչում են իրենց մայրերին... Եւ ով գիտէ, գուցէ մայրն էլ, զաւակն էլ կենդանի են, բայց իրար չեն գտնում։

Արդեօք մենք ինչ պիտի անենք, որ գէթ մի փոքր մխիթարենք այդ թշուառներին առաջիկայ տօներին։ Դուք, ով մայրեր, որ բախտ ունիք ձեր կուրծքին սեղմելու ձեր սիրասուն զաւակներին, մի մոռանաք այն հազարաւոր մայրերին, որոնք զրկուած են այդ երջանկութիւնից և հասկացրէք ձեր զաւակներին, որքան մեծ է թիւը փոքրիկ որբերի, որոնք նոր տարուն ոչ մի ուրախութիւն չեն ունենայ։

Ապա անհրաժեշտ է, որ մենք, աւելի բարեբախտ ծնողներս, խորհենք ամեն մէկս կատարել մեր պարտականութիւնը գէթ մի օրով ուրախացնելով մեր դժբաղդ եղբայրներին ու քոյրերին։

Իշխանուհի Մ. Թումանեան

---

## ՎՐԱՑ ԱՇԽԱՐՀԻՑ

### ՔՍԱՆ ԵՒ ՀԻՆԳ ՏԱՐՈՒՑ ՅԵՏՈՅ

Ճիշտ 25 տարի սրանից առաջ վերջացնելով վրաց լեզուի նախնական ծանօթութիւնները, մենք ձեռք զարկեցինք վրաց

գրականութիւնն ու պարբերական հրատարակութիւններն ուսումնասիրելու։ Շատ չնչին բացառութեամբ ծանօթացանք այդ քառորդ դարի ընթացքում մեր հարևանների ամբողջ հին և նոր մատենախօսութեան և ուշի ուշով հետևեցինք նրանց լրագրութեան և ամսագրերին։ Մենք մեծ հաճոյք էինք զգում և շատ բաղդաւոր համարում մեզ, որ հնար ունէինք մօտիկից, իսկական աղբիւրներից, ճանաչելու այն ժողովուրդը, որի հետ դարերից ի վեր, անյիշելի ժամանակներից սկսած, ապրել ենք կողք կողքի և մասնակցել յաճախ միմեանց ուրախութիւններին ու վշտերին։

Մեզ առանձին բաւականութիւն էր պատճառում մանաւանդ նրանց ընտիր, համով-հոտով, քաղցրահնչիւն բանաստեղծութիւնների ու պոյէմների ընթերցումը։ Միթէ կարելի է առանց հոգեկան մեծ հրճուանքի կարդալ 12-դ դարի հսկայ գրող անմահ Շոթա Ռուսթաւելու «Ընձենաւորը», մեծատաղանդ Նիկոլոզ Բարաթաշուիլու, Իլիա Ճաւճաւաձէի չքնաղ ստեղծագործութիւնները . . . Արժէր վրացերէն սովորել և տարիներ տքնել հէնց միմիայն Ռուսթաւելու այդ չքնաղ երկասիրութիւնը կարդալու համար . . .

Մեր ընթերցողների համար, անշուշտ, հետաքրքրական կը լինի իմանալ, թէ ինչ եզրակացութեան հասցրեց մեզ մեր այդ 25-ամեայ աշխատանքը։ Ի՞նչ համեմատութիւն կարելի է անել արդեօք երկու դրացի ազգերի — հայերի ու վրացիների — գրականութեան և պարբերական մամուլի . . .

Այդ առիթով մենք առ այժմ կանենք միայն հետևեալ թռուցիկ դիտողութիւնները։

Նախ և առաջ յարմարութեան համար մենք այս անգամ մի կողմ ենք դնում մեր և վրաց գրականութեան հին շրջանները և վերցնում միայն նրանց վերջին շրջանը, այն է 19-դ և ներկայ 20-դ դարը։ Դա երկու ազգերի գրականութիւնների վերածաղկման շրջանն է, որ սկսում է համարեա միաժամանակ։

Այս շրջանում սկիզբ են առնում ու աւել կամ պակաս զարգանում գրականութեան բոլոր տեսակներն էլ երկու ազգերի մօտ։ Ցայտուն կերպով աչքի է ընկնում, որ վրացիք աւելի խոշոր տաղանդով օժտուած բանաստեղծներ են հանդէս բերում, քան հայերը — Նիկ. Բարաթաշուիլի, Իլիա Ճաւճաւաձէ, Ակակի Ծերեթէլի։ Շատ աչքի է ընկնում, որ վրացի գրողները՝ գրականութեան բոլոր ճիւղերում աւելի մանր, նիհար աշխատութիւններ են տալիս, այնպէս որ ի զուր կը լինի փնտրել նրանց գրական շուկայում «Կայծերի», «Դաւիթ-Բեկի», «Խաչագողի յիշատակարանի», «Արսէն Դիմաքսեանի», «Կռուածաղկի», «Հացի խնդրի», «Միլիքի աղջկայ», «Գէորգ Մարզպետունու», Լէօի «Գրիգոր Արծրունու», Ալիշանի «Այրարատի» և «Շիրակի», Գարագաշեանի «Քննական հայոց պատմութեան», Տաշեանի «Հայ ձեռագրների ցուցակի» և հայոց այլ մի քանի տասնեակ խոշոր գրքերի չափ աշխատութիւններ։ Միւս կողմից առանձին կերպով աչքի է ընկնում նաև այն հանգամանքը, որ գրականութեան բանաստեղծական բաժնից դուրս եղած բոլոր ճիւղերում աւելի խոշոր, հասարակութեան բոլոր խաւերի վրայ զօրեղ ազդեցութիւն ու հմայք գործող գրողներ հանդէս են բերում աւելի չափով հայերը, քան վրացիք։

Այսպէս, օրինակ. վրաց վիպագրութիւնը չէ ունեցել իր Րաֆֆին, վրաց դրամատուրգիան իր Սունդուկեանը, վրաց երգիծաբանութիւնը իր Պարոնեանը, վրաց մանկավ. գրականութիւնը իր Ղազ. Աղայեանը, վրաց բանասիրութիւնը իր հայր Տաշեանը և Նորայր Բիւզանդացին, վրաց ազգագրութիւնը իր Ալիշանը ու Սրուանձտեանը, վրաց պատմագրութիւնը, իր Գարագաշեանը, Երիցեանը ու Լէօն, վրաց մանկավարժութիւնը իր Սեդրաք Մանդինեանը, վրաց երաժշտութիւնը իր Եկմալեանը, վրաց հրապարակախօսութիւնը իր Ստեփաննոս Նազարեանը և Գրիգոր Արծրունին...

Մենք աւելի մեծ գրողներ ենք ունեցել . . .

Մենք այստեղ առանձին հաճութեամբ պէտք է յիշենք, որ վերջին հինգ-վեց տարուայ ընթացքում ուսուցչապետ Ն. Մառի վրացի աշակերտներից մի քանիսը սկսել են վրաց պատմութեան և լեզուի մասին աչքի ընկնող հմտալից ու անաչառ ուսումնասիրութիւններ հրատարակել։ Չենք կարող միւս կողմից առանց ցաւելու չյիշատակել, որ վրաց շատ հեղինակներ չեն կարողանում աւելի խոշոր գործեր հրատարակել իրանց չքաւորութեան և ժողովրդի անտարբերութեան պատճառով։

Ահա առ այժմ այսքանը կարող ենք ասել և այսպէս համառօտակի՝ քսանհինգ տարի մեր հարևանների գրականութեան և պարբերական մամուլին ուշի ուշով հետևելուց յետոյ. . .

Տիգր. Փիրումեան

---

## ՕՐԷՆՔ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ (30 ՕԳՈՍՏՈՍԻ 1915 Թ.)

Ներկայ արիւնալի պատերազմը յառաջ բերեց փախստականների ահռելի հոսանք թէ արևմուտքի և թէ արևելքի պատերազմական գործողութեանց շրջաններից։

Այդ երկու լայնատարած շրջանների խաղաղ ժողովուրդը ահարեկուած մարդկային պատմութեան մէջ չը տեսնուած ու չը լսուած կոտորածներից, աւերումներից, թողնում է իր նստավայրը, տուն ու տեղը, գոյքը, և խուճապելով ուղևորւում է երկրի խորքերը, զրկուած ամէն բանից, միայն թէ փրկած լինի իր կեանքը։

Գերմանական ու աւստրիական սահմանների մօտ Ռուսաստանի նահանգներից դիմում են փախուստի լեհեր, հրէաներ, լատիշներ և ռուսներ, իսկ Անդրկովկասի սահմանագլխից շարժւում է նախ մեր տեղական ժողովուրդը Արդուինի, Օլթիի, Արդահանի ու Ղարսի մի քանի գաւառներից, և ապա՝ սկսւում է մեծ հոսանք հայերի և ասորիների Տաճկաստանից և Պարսկաստանից։ Փախստականութիւնը ստանում է հսկայական չափեր։

Անդրկովկասում փախստականների թիւը սկզբում հասնում էր մօտ 300 հազար հոգու, որոնցից մինչև 250,000 հայ էին, թէև ճիշտ ցուցակագրութիւն տակաւին չի կատարուած։ Իսկ արևմուտքում փախստականների թիւը միլիոնների է հասնում։ Փախստականների վիճակը մեզնում վերին աստիճանի սրտաճմլիկ էր. քաղաքներ, գիւղեր, ճանապարհներ ու փողոցներ լցուել էին բոբիկ, մերկ, քաղցած փախստականներով, որոնց մէջ կային շատ հիւանդներ շնորհիւ ճանապարհորդութեան ծանր պայմանների։ Ոչ հասարակութիւնը, ոչ էլ կառավարութիւնը պատրաստ չէին նրանց ընդունելու և նրանց ծով կարիքներին գոհացում տալու։ Առաջին օգնութիւն հասցնողը եղան հասարակական և ազգային կազմակերպութիւնները, բայց, չքնայած նրանց անձնուէր, եռանդուն գործունէութեան ու ջանքերին, անզօր հանդիսացան. ոչ նրանց ուժերը ոչ էլ նրանց ունեցած նուիրատւութեամբ ժողոված նիւթական միջոցները չէին կարող բաւական լինել։

Եւ այդ դրութեան հետևանքը եղաւ ծանր և ողբալի։ Մեր շրջանի փախստականների մէջ քաղցից առաջ եկան զանազան հիւանդութիւններ՝ հնդախտ՝ քոլերա, բծաւոր տիֆ և այլն, որոնք կլանեցին հազարաւոր մարդկային կեանքեր։

Արտասովոր աղէտի դէմ կռուել կարող էր միայն կառավարութիւնը իր զօրեղ միջոցներով։ Եւ ահա՝ 30-ն օգոստոսի ներկայ տարուայ հրատարակուեց փախստականների վիճակը բարւոքելու համար Բարձրագոյն հաստատուած օրէնքը։

Ի նկատի առնելով, որ փախստականների խնդիրը ամենամեծ և ուշադրաւ ժամանակակից խնդիրներից մէկն է, մենք հարկաւոր ենք համարում առ այժմ ծանօթացնել մեր ընթերցողներին այդ օրէնքի ամենաէական կէտերին թողնելով օրէնքի լիակատար թարգմանութիւն յետագայում։

---

*) Ծանօթ. Հայկական Կենտրոնական Կոմիտէի Ներկայացուցիչը Պետական Դումայի անդամ Գ. Մ. Գաղաջանեանն է ընտրուած.

Փախստականներ ըստ օրէնքի իմաստի համարւում են այն անձինք, որոնք հեռացւում են իրենց բնակավայրից, երբ վերջինս ենթարկւում է վտանգի թշնամու կողմից կամ անցնում է նրա ձեռքը. փախստականներ համարւում են նոյնպէս և նրանք, որոնք հեռացւում են իրենց տեղից զինուորական կամ քաղաքացիական իշխանութեան կարգադրութեամբ, պատերազմական շրջանում գտնուող։

Միայն թէ այս օրէնքի ոյժը չէ տարածւում այն փախստականների վրայ, որոնք պատկանում են օտարահպատակ գերմանական ու աւստրիական ազգութիւններին։

Փախստականների օգնութեան գործը կազմակերպելու, ղեկավարելու և հսկելու համար հաստատուած է Առանձին Խորհրդակցութիւն Ներքին գործոց Նախարարի Նախագահութեամբ, որ համարւում է ամենաբարձր պետական ատեանը։

Այդ Առանձին Խորհրդակցութեան անդամներն են Պետական խորհրդի եօթ անդամ, Պետական Դումայի եօթ անդամ, մէկ-մէկ ներկայացուցիչ բոլոր նախարարութիւններից, Կովկասի Փոխարքայի կողմից, Մեծ Իշխանուհի Տատիանա Նիկոլաևնայի յանձնաժողովից, մէկ-մէկ քաղաքների ու զեմստուոյի միութիւններից և ազգային կազմակերպութիւններից, այն է Լեհական, Հայկական Կենտրոնական, Լատիշների, Լիտովցիների և Հրէաների յանձնաժողովներից, Վրացոց և Բաքուի մուսուլմանների Բարեգ. Ընկերութիւնների կողմից։

Առանձին Խորհրդակցութեան քննութեան և իրաւասութեան խնդիրները հետևեալներն են. 1) Պետական գանձարանից ստացուած գումարների բաշխումը տեղական մարմինների մէջ. 2) Փախստականների բնակեցնելը ժամանակաւորապէս զանազան վայրերում, նրանց անուանական ցուցակագրութիւնը, վերադարձը իրենց առաջուայ տեղերը, վերանորոգումն նրանց տնտեսութեան և յետագայ վիճակի բարուոքումը. 3) Լուծումն հետևեալ հարցերի. գնահատումն փախստականների տեղում թողած կալուածների և շարժական գոյքի, հատուցումն փախստականների այն վնասների, որ նրանք կրել են պատերազմի հանգամանքներից, այլ և հատուցումն այն իրերի արժողութեան, որ առել է զինուորական իշխանութիւնը պատերազմական կարիքների համար. 4) Պատերազմից վնասուած ժողովրդին հասցնել օգնութիւն փոխատուութեամբ պետական գանձարանից. 5) Հոգատարութիւն փախստականների մտաւոր-բարոյական կարիքների՝ հիմնելով նրանց համար դպրոցներ, դասընթացներն և այլն 6) Դիւրացնել արտաքին գործոց նախարարութեան և չէզոք պետական ներկայացուցիչների միջոցով այն փախստականների և նրանց մերձաւորների հաղորդակցութիւնը, որոնք մնացել են իրենց ծննդավայրում. 7) Մշակումն հրահանգների փախստականների առթիւ նշանակուած գլխաւոր լիազօրների համար. 8) Ծրագիր տեղական յանձնաժողովների կազմի և գործունէութեան համար.

Այս օրէնքի հիման վրայ Պետական գանձարանը ներկայ 1915 տարուայ համար տուել է 25 միլիոն ռ. գործադրելու փախստականների դրութիւնը բարւոքելու համար։

Վերոյիշեալ Օրէնքի կէտերից երեւում է, թէ ինչ լայն հիմունքների վրայ է դրուած փախստականների օգնութեան գործը, թէ ինչ լուրջ նշանակութիւն է տուած փախստականների բազմատեսակ այժմեան կարիքներին, սկսած նիւթականից մինչև բարոյականը ու մտաւորը և ապագայում նրանց վերադարձի ու տնտեսութեան վերականգնման խնդիրներին։

Ոչ նուազ ուշադրութեան է առնուած օրէնքի իմաստով ու հասարակական և ազգային կազմակերպութիւնների աջակցութիւնն ու մասնակցութիւնը, որոնց գործակցութիւնը համարւում է կարևոր։

Օրէնքի ոյժը չէ սահմանափակուած Ռուսաստանի նախկին պատերազմից առաջ եղած սահմաններում, այլ տարածւում է ամենուրեք, ուր տիրում է ռուսաց իշխանութիւնը. հետևապէս Տաճկաստանի և Պարսկաստանի և այն մասերում, որոնք այժմս գտնւում են Ռուսաստանի հովանաւորութեան ներքոյ։

Օրէնքը գեղեցիկ է, այժմ մնում է, որ գեղեցիկ կերպով էլ գործադրուի թշուառների, պատերազմի անմեղ զոհերի դառը վիճակը թեթևացնելու համար։

Ս. Յարութիւնեանց

# Արտաքին տեսութիւն

## ԹԻՒՐՔԱՀԱՅԵՐԸ

Զարհուրելի թուանշաններ. — Երիտասարդ թիւրքերի գազանութիւններին անհամեմատ աւելի ահագին թուով են զոհ գնացել հայերը, քան հին թիւրք, կարմիր գազան և այլ այսպիսի յորջորջումներով պսակուած Աբդիւլ-Համիդի վայրագութեան։ 1915 թուականի կոտորածների մասին հաղորդւում են զանազան թուական տեղեկութիւններ։ Այսպէս, «Մշակի» ասելով, Կ. Պոլսի հայոց պատրիարքը տեղեկագրել է ամենայն հայոց Վեհ. Կաթողիկոսին թէ բոլոր կոտորուած հայերի թիւը հասնում է 800 հազարի։ Այս քանակութիւնն էլ զեկուցուեց անգլիական լորդերի պալատում, ուր սակայն, կասկած յայտնուեց թէ այդ թիւը չափազանցուած է։ Այդ կասկածը հերքուեց զեկուցող լորդի կողմից, և ռուսաց ազդեցիկ «Новое Время» թերթն էլ յայտնեց, թէ չափազանցութիւն չըկայ։ Չընայած այս հանգամանքին, յայտնի թիւրքահայ գրող Զօպանեանը «Մշակի» մէջ պնդում է, թէ 800 հազարը չափազանց թիւ է։ Այնուհետև յայտնի հայասէր լորդ Բրայսը իր արտասանած ճառերից մէկում յայտնեց, որ մինչև այժմ երիտասարդ թիւրքերի վոհմակը սրի է անցկացրել մի միլիոն հայ, առել է ամբողջ թիւրքահայութեան կէսը։ Ամենավերջին տեղեկութիւնը, որ բերում է «Հորիզոն» թերթը, հիմնելով «Times» լրագրի հաղորդագրութեան վրայ, այն է՝ որ Թիւրքիայում մինչև այժմ սպանուած, տեղահանուած կամ իսլամացուած են 835 հազար հայեր։—Այս թիւը նախընթացների վերաբերմամբ արդէն բաւական նուազ է, թէև մնում է դարձեալ խեղդող իր ահռելիութեամբ . . .

Կացութիւնը.—«World» լրագրի աշխատակիցը, որ գըտնում էր հարաւ աքսորուող հայերի խմբերի ետևից, որոնք Անատոլիայից քշւում են Արաբական թերակղզու հարաւը, նկարագրում է այն արիւնազանգ կոտորածները, որ թիւրքերը սարքեցին Մենաքիր սարերի մէջ, Իմարա գիւղի շրջակայքում։ Գնալով անապատում ամբողջ 8 օր, հալածական հայերի մի խումբ, բաղկացած 200 ծերունիներից և 600 կանանցից ու երեխաներից, սաստիկ տառապում էր քաղցից ու ծարաւից։ Հալածական այդ հայերից շատերը ետ էին մնում կարաւանից, ուժասպառ լինելով թուլութիւնից և հիւծուելուց։ Ամերիկացի թղթակիցները և չէզոք սանիտարական առաքելութիւնների մի քանի անդամներ օգնութիւն էին ցոյց տալիս և փրկեցին մի քանիսին այդ թշուառներից։ Սակայն մօտ 100 հոգի սովամահ եղան։

Երբ թշուառները մօտեցան Մենաքիր սարերին և տեսան հեռուից Իմարա գիւղի մօտ բուսականութիւն, ուրախացան, որ շուտով կըստանան ջուր, ուստի վազելով դիմեցին դէպի փրկարար օազիսի կողմը։ Բայց զօրախմբի պետ թիւրք սպան, կարծելով թէ հայերը կամենում են փախչել, հրամայեց զօրախմբին գնդակահարել փախչողներին։ Գնդակահարութիւնից յետոյ, երբ մի քանի տասնեակ հայեր ընկան, ձիաւոր զինուորները սկսեցին թրերով կոտորել հայերին։ Տեղի ունեցաւ մի արիւնազանգ կոտորած, որը ոչ ոք չըկարողացաւ կասեցնել։ Թիւրքերը և քիւրդերը, կանգնեցնելով փախչող ամբոխը, մտան նրա մէջ, և սկըսուեց թշուառ և տանջուած հալածականների ընդհանուր կոտորած։ Սպանուեցին և վիրաւորուեցին մօտ 300 հոգի։ Դոկտոր Խիմանէցը, որ սպանական սանիտարական առաքելութեան անդամն է,

բազմում է Աւստրօ-Հունգարիայի դէմ։ Պատերազմն սկսուել է մայիս ամսին և այն ժամանակից պատերազմը մղւում է Իտալիայի սահմանների շուրջը, աւստրիական հողի վրայ, լեռնային դժուարակոխ վայրերում։ Իտալացիները յաջողութիւն են ունեցել մինչև այժմ։ Նրանց գլխաւոր նպատակն է առնել Տրիեստին, որ մեծ կարևորութիւն ունեցող նաւահանգիստ է Ադրիական ծովի վրայ։ Այդ տեղին մօտենալու համար իտալացիները դեռ պիտի գրաւեն Գօրիցա առաջնակարգ բերդը, որ վաղուց պաշարուած է իտալական զօրքերով և որի անկումը սպասւում է օրէցօր։

Հարաւային ճակատի կենտրոնն է Բալկանեան թերակղզին։ Այստեղ Սերբիան, որի պատճառով սկսեց ներկայ պատերազմը, երկար ժամանակ հերոսաբար կռւում էր Աւստրիայի դէմ։ Գերմանիան կամենալով ոչնչացնել այդ դիմադրող ուժը, որ փակում էր նրա ճանապարհը դէպի Կ. Պոլիս, միացրեց իր զօրքերը աւստրիական բանակին և բացի դրանից կարողացաւ իր կողմը գրաւել Բուլղարիան, որ դաւաճանաբար յարեց Աւստրիային, Գերմանիային և Թիւրքիային։ Երեք կողմից աւստրօ-գերմանօ-բուլղարական զօրքերը մտան Սերբիա և իրանց թւական առաւելութեամբ ճնշեցին բանակը հարկադրելով նրան թողնել սերբիական հողը և անցնել Ալբանիա և Չերնոգորիա։

Հէնց որ յայտնի դարձաւ բուլղարական դաւաճանութիւնը, Անգլիան և Ֆրանսիան բանակներ ուղարկեցին Սալոնիկ, որպէսզի այդտեղից առաջանալով, միանան սերբիական զօրքերի հետ և ափին պաշտպանեն Սերբիան։ Սակայն այս գործը բաւական ուշ կատարուեց, երկու պետութիւնները չը կարողացան մեծ ուժեր հասցնել սերբիական ռազմաբեմը, ուստի և չը կարողացան դիմադրել գերմանօ-աւստրօ-բուլղարական արշաւին։ Անգլօ-ֆրանսիական զօրքը, սերբիական զօրքի ընդհանուր նահանջից յետոյ, չը կարողացաւ դիմադրել բուլղարական գրոհներին և ստիպուած եղաւ նահանջել դէպի Սալոնիկ։ Ներկայումս երկու դաշնակիցները ամրացնում են Սալոնիկը։ Նորանոր զօրքերն են ափ իջեցնում և պատրաստւում են լուրջ ձեռնարկութիւնների։

Անգլօ-ֆրանսիացիների անյաջողութեան մի խոշոր պատճառն էլ Յունաստանի բռնած երկդիմի և նենգամիտ դիրքն էր։ Յունաստանը դաշնագրութեամբ պարտաւորուած էր օգնել Սերբիային բուլղարական յարձակման դէմ, բայց դրժեց այդ դաշինքը և այդ բաւական չէ, դեռ փորձեր արաւ, ի հարկէ, շահի դրդումով մօտենալով իր դաշնակցի թշնամիներին Գերմանիային և նրա հետ միացածներին, հէնց նոյն այդ դաշնակից Սերբիայից հողեր խլելու համար։ Սակայն Անգլիան և Ֆրանսիան խիստ միջոցներ ձեռք առան Յունաստանի դէմ, որ և սկսեց, առ այժմ գոնէ, նպաստաւոր դիրք բռնել քառեակ համաձայնութեան պետութիւնների վերաբերմամբ։ Դէպի Աւստրիական ծովի ափը նահանջած սերբիական զօրքը օգնութիւն է ստանում իտալական այս զօրաբաժիններից, որոնք ափ են իջել Բալկաններում անգլիացիների և ֆրանսիացիների հետ միասին գործելու համար։

Բալկանեան ռազմաբեմի մի կարևոր մասն էլ կազմում է Դարդանէլի նեղուցը և Գալիպոլի թերակղզին։ Այստեղ մեծամեծ ընդհարումներ տեղի ունեցան անգլօ-ֆրանսական և թիւրքական բանակների մէջ։ Յաջողութիւն ունեցան վերջիններս, որոնք կարողացան մեծ յամառութեամբ պաշտպանել բնութիւնից ամուր, ժայռոտ թերակղզին։ Վերջերս պարզուեց անգլիացիների համար որ պէտք է վերջացնել Դարդանէլի գործողութիւնները։ Թերակղզու մի մասից անգլիական զօրքերը այժմ արդէն դուրս են հանուած և տարուած ուրիշ կողմեր։ Սակայն, առ այժմ գոնէ, չէ կարելի ասել թէ դաշնակիցները վճռել են միանգամայն ընդմիշտ վերջ տալ Դարդանէլի ձեռնարկութեան։ Ֆրանսական, մասամբ և անգլիական զօրքեր դեռ մնում են թերակղզու այն մասերում, որոնք գտնւում են նեղուցի վրայ։

Դարդանէլեան ճակատից յետոյ հարաւային ուղղութեամբ գալիս է արդէն մեր, Կովկասեան ճակատը, որ Սև ծովի ափերից Օլթիի, Սարըղամիշի, Մանազկերտի, Վանի ուղղութեամբ հասնում է Ուրմիայի լճի հարաւ-արևմտեան անկիւնին։ Այս ընդարձակ տարածութեան վրայ խոշոր պատերազմական գործողութիւններ վերջին ժամանակներս տեղի չեն ունեցել։

Կովկասեան ճակատին վերջին ժամանակներս աւելացաւ պարսկական ճակատը։ Պաշտօնական Պարսկաստանը չէզոքութիւն է պահպանում, բայց Գերմանօ-թիւրք գործակալները ամէն կերպ աշխատում են խռովութիւններ յարուցանել Իրանում և նրան էլ գցել պատերազմական գործողութիւնների ասպարէզը։ Նրանց յաջողուել է իրանց կողմը գրաւել պարսկական ժանդարմներին և կազմել կամաւոր գումարտակներ անգլօ-ռուսական ազդեցութեան դէմ կռւելու համար։ Երկար ժամանակ ռուսական և անգլիական կառավարութիւնները համբերութեամբ տանում էին այդ արարքները, բայց երբ նրանք վտանգաւոր կերպարանք ընդունեցին, ռուսական մի ուժեղ զօրաբաժին արշաւեց դէպի Համադան, գրաւեց նրան և Կում քաղաքը, ուր ապստամբութեան պետերը կառավարութիւն էին կազմել։

Համադանից դէպի արևմուտք, Քիրմանշահ քաղաքի վրայով հին մեծ ռազմական ճակատ է, ուր անգլիացիները կռւում են թիւրքերի դէմ։ Անգլիական զօրքերը վերջերս համարեա հասել էին Բաղդադ քաղաքին, որ շատ մեծ նշանակութիւն ունի Գերմանիայի համար իբրև գլուխ Բաղդադի երկաթուղու։

Սակայն թիւրքերը, ուժեղացնելով իրանց զօրքերը, յետ մղեցին անգլիացիներին դէպի հարաւ։ Ներկայումս անգլիացիները ամրացած են Տիգրիսի վրայ և օգնական զօրքեր են ստանում։

—

— Անգլիան ներկայումս հաւաքում է մի միլիոն կամաւոր զինուոր։ Պատերազմի սկզբից Անգլիան հաւաքել է 5 միլիոն զօրք։ Ինչպէս յայտնի է, Անգլիայում պարտադիր զինուորական ծառայութիւն չկայ։

Եւ միայն անգլիական ժողովրդի բարձր ազգային գիտակցութիւնն է, որ հնարաւոր է դարձնում կամաւոր զինուորական ծառայութիւն այնպիսի չափերով, որոնք պակաս չեն այն երկրներից, ուր պարտադիր է զինուորական ծառայութիւնը։

— Գերմանական զօրքերի կորուստները պատերազմի սկզբից մինչև այժմ հաշւում են 4 միլիոն մարդ։

---

## ԾԱՂԿԱՓՈՒՆՋ ԱՐԵԱՆ ԴԱՇՏԵՐԻՑ

—

Այս վերնագրի տակ ես ուզում եմ «Համբաւաբեր»-ի ընթերցողներին քաղուածքներ տալ իմ մօտիկ բարեկամի նամակներից, որ իբրև ռուս զօրքի սպայ՝ մասնակցում է եւրոպական ահռելի պատերազմին Արևմտեան ճակատում։ Թւում է, մահուան թագաւորութեան սահմաններում գործի կանչուած զինուորականի անմիջական դիտողութիւններն ու ապրումները որոշ իրական գաղափար կըտան մեզ արհաւիրքներով հարուստ այն կեանքի մասին, որը կռուի ժխորից հեռու եղողներիս պատկերանում է իբրև չոգիացած արեան ու արցունքի մշուշով պատած անծանօթ աշխարհ։ Իմ ծաղկաքաղը, որպէս ակնատեսի շտապ ձեռքով գրի առած եղակի դէպքերի նկարագիր, հեռու է գեղարուեստական ամբողջութիւն ունենալու յաւակնութիւնից. այստեղ միութեան օղը միջադէպերի ժամանակագրական կարգն է, այն էլ ոչ առանձին ամսաթուերով, այլ հսկայական պատերազմի այս կամ այն շրջանով։

### I

### ՃԱՆԱՊԱՐՀԻՆ*)

Զինուորական գնացքը յվերջապէս շարժուեց ու գիւացած վիշապի պէս սկսեց դանդաղ սողալ սարնիվեր ձգուած զուգընթաց երկաթուղով։ Մեռնող արևի հրացոլ գոյնը իր ոսկէհոյլ փշաձև ճիրանները խրել էր ծովի կանաչ-վարդագոյն կրծքի մէջ, զօրում

էր սուզուել, թափանցել նրա խորհրդաւոր խորութիւնը, սակայն հանդիպելով դիմադրութեան, բոցավառ երկնքի հրեղէն աչքը սրտնեղութիւնից կարմրել, կրակ էր կտրել, անհուն նեարդայնութեամբ անընդհատ թարթում էր, կարմիր լոյսի, դեղին ոսկու տատտ փոշի ցանելով նաւահանգստի վրայ, որտեղից նաւաստիները հրաժեշտի ազդկոտ ողջոյն էին ուղարկում մեզ: Հսկայական ամֆիթատրոն յիշեցնող քաղաքի բնակիչները պատուհաններից, պատշգամբներից ծաղիկ էին շաղում մեր ճանապարհին, թաշկինակ շարժում, բարի երթ մաղթում և յաղթութիւն ցանկանում մեզ: Հոգեթինդ կեցցէները բերանից բերան անցնում, միանում, ուժեղանում, ահեղագոռ փոթորկի պէս ցնցում էին սար ու ձոր: «Բամ, փամփ» հեւացող շոգեմեքենան, կարծես ամաչելով այս ցոյցերից, աւելի ու աւելի արագանում, խուսափում էր դէպի հիւսիս, դէպի Մեծ Ռուսաստանի լայնածիր դաշտերը: Մի փոքր և շքեղ զարդարուած քաղաքը մեր տեսողութիւնից կտրուեց, անցաւ մեր յիշողութեանը: Հարաւի մութ գիշերը ներս նայեց վագոնի բաց պատուհաններից, ու խաւարը իր անշօշափելի թանձրութեամբ լցրեց ամեն դատարկութիւն:

Ընկեր սպաները՝ տակաւին սրտառուչ բաժանման ազդեցութեան տակ շարունակում էին լուռ մտմտալ իրենց տեսածն ու զգացածը: Ամենքիս համակող նուիրական լռութիւնը խանգարեց պարուչիկ Ռուբինը, որին մայրը կայարանում այնքան երկար խաչակնքում և օրհնում էր, ջերմ համբոյրների ու արցունքի տարափ տեղալով նրա կոնաձև գլխին:

— Հետաքրքիր է, կըգա՞յ այն օրը, երբ մեզ կը դիմաւորեն այսպիսի հանդիսաւորութեամբ, յաղթութեան դափնիներ փռելով մեր ոտների տակ:

— Որ այդ օրը գալու է, ես չեմ կասկածում, կասկածելի է միայն մեր մասնակցութիւնը այդ տօնախմբութեանը. չէ՞ որ ներկայ պատերազմը անյատակ անդունդի պէս մեզնից տասնեակ հազարներ է կուլ տալու, մինչև կըհնչի խաղաղութեան ժամը, պատասխանեց կապիտան Մաքսիմենկօն ու վառեց գլանակը:

— Ի՞նչ ասես չէի տայ, պարոններ, եթէ մէկ էլ դառնայի ձեր գողտրիկ քաղաքը և «ծովափնեայ այգում» նստած, դիտէի մռայլ Պօնտոսի երեկոյեան զուարթ խաղը, հառաչեց պրապորշչիկ Խրիստոֆորովը, որ Պետրոգրադից էր: Չգիտեմ ինչու, մի ծանր նախազգացում ճնշում է սիրտս: «Ալեքսէյ Իւանովիչ, կատակելով դիմեց նա իր վաշտապետին. Ինչ կասէք, եթէ տասօրեան ձեզ հրաժարական տամ, չեմ ուզում ծառայել, հօ ոյժի բան չէ: Երդւում եմ բժիշկ Կողանի Եհովայով, որ առանց ինձ էլ կըջարդէք գերմանացիների բարձր քնած քիթը: Առանց քեզ, չգիտեմ, բայց որ առանց ինձ Ռուսաստանը կարող է հրաշալի պատերազմել, — այդ ամենքդ էլ կըվկայէք, վրայ բերեց բժիշկը, մեծ, կարմիր քթով մի թզուկ հրէայ, խիստ շրջահայեաց ու սրամիտ:

Դրանով էլ խօսակցութիւնը վերջացաւ: Մեզանից իւրաքանչիւրն անձնատուր իւր անհատական մտքերին ու խոհերին, բաւական մտազբաղ էր, թէև ընդհանուր տրամադրութիւնը լաւ էր և յաղթանակի հաւատը պայծառ: Միջանցքում, կանգնած պատուհանի դիմաց, ես անթարթ աչքերով նայում էի դուրսը, թէև ոչինչ չէի նկատում: Տարածութիւնը և ժամանակը մերժող մտքի արագութիւնը ունեցող վերջին դէպքերը պաշարել էին ինձ: Մեծ Ռուսաստանը, պաշտպանելով փոքրիկ Սերբիայի արդար դատը, մերկացրել էր իւր սուրը, և նրա անողոք զօրքերը լեռներից վազող հեղեղների պէս տարբեր ճանապարհներով, ժողովրդի ցնծագին խրախուսանքով, շտապում էին դէպի սահմանը, հատու հարուածով կտրելու այն ձեռքը, որը փորձում էր ոլորել ազատ ժողովրդի համար սրբութեան շղթաներ կռել...

— Ո՞վ, հապա ո՞վ է խորտակելու իմ դժբախտ հայրենիքի միտքն ու հոգին կաշկանդող երկաթէ օղերը, պարանոցը ճնշող տաճկական անարգ լուծը, որի ծանրութեան տակ կորացած՝ Մայր Հայաստանը դարեր շարունակ արիւն-արցունք է լալիս:

Ռուսաստանը, Հիւսիսի վէս Արծիւը,—հաւատում եմ ես և այդ հաւատով էլ կռուի դաշտ եմ գնում: Գեղեցիկ է կեանքը, հրապուրիչ՝ արևի լոյսը, բայց պակաս գեղեցիկ, նուազ հրապուրիչ չէ նաև մարտի դաշտ հանդիպում մահը, որ ազատ կեանքի, անկախ գոյութեան է կանչելու մի կիսամեռ ժողովուրդ, մի սուրբ երկիր...

Բարո՛վ մնաս, սիրելիս, եթէ ուզում ես յիշատակս վիրաւորել, մահուանս լուրն անելիս տխրիր ու արտասուիր:

Վ. Արմէն

*) Վերնագիրը ես եմ դնում:

# Մահացուցակ

## ԿԱՐԱՊԵՏ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՏԷՐ-ՄԿՐՏՉԵԱՆ

Նոյեմբերի 18-ին Բագուի նաւթարդիւնաբերողների հիւանդանոցում, արեան վարակումից, որ հետևանք էր վիրահատութեան, վախճանուեց և 22-ին մեծ հանդէսով Ս. Լուսաւորիչ եկեղեցու բակում թաղուեց Շամախու թեմի առաջնորդ Կարապետ եպիսկոպոս Տէր-Մկրտչեանը...

Հանգուցեալը հայ ժամանակակից՝ արդէն շատ սակաւաթիւ նշանաւոր հոգևորականներից մէկն էր, և նրա մահը մեծ կորուստ է նախ և առաջ հայ եկեղեցու համար: Ծնուել է Գողթան գաւառի Ցղնա գիւղում 1865 թուականին, ուրեմն հազիւ 50 տարեկան էր և դեռ երկար կարող էր ծառայեցնել իր մտաւոր ոյժերը հայ եկեղեցուն և ժողովրդին, եթէ անակնկալ և անհասկանալի պարագաների մէջ առաջացած մահուան զոհ չգնար:

Իր ուսումն աւարտել է Էջմիածնի ճեմարանում Մակար կաթողիկոսի օրով: Այդ ժամանակներն էին, որ Էջմիածնի պաշտօնական շրջանակներում և հասարակութեան մօտ, նոյն իսկ առաջաւոր խաւերում, մի տեսակ ազգային փրկութիւն էր համարւում կրթուած հոգևորականներ պատրաստելը, հասկանալով այդ կրթութիւնը զուտ եկեղեցական, աստուածաբանական մըտքով: Էջմիածնի ճեմարանը պիտի լրացնէր այդ պահանջը: Այս նպատակով էլ աստուածաբանութեան ուսուցչի պաշտօնով Էջմիածին հրաւիրուեց Մաղաքիա եպիսկոպոս Օրմանեանը. Կարապետ Տէր-Մկրտչեանը նրա աշակերտն էր: Ընդունելով կուսակրօնութիւն, նա ուղարկուեց Գերմանիա աստուածաբանական բարձր կրթութիւն ստանալու համար: Աւարտելով ուսումը, Կարապետ սարկաւագը վերադարձաւ Էջմիածին արդէն Խրիմեան կաթողիկոսի օրով 1893-ին և այնուհետև սկսեց արագ աչքի ընկնել և անուն հանել իր ընդունակութիւններով:

Դժուար է մի փոքրիկ յօդուածում թուել նրա վարած պաշտօնները եկեղեցական և դպրոցական ասպարէզներում և մանրամասն գնահատութիւններ անել: Կասենք որ նա եղել է ուսուցիչ և տեսուչ ճեմարանում, թեմակալի փոխանորդ Երևանում, առաջնորդ՝ Աստրախանի և վերջը՝ Շամախու թեմերում:

Բայց վարչական գործունէութիւնը չէ, որ Կարապետ եպիսկոպոսին յատկացրել է որոշ տեղ մեր իրականութեան մէջ:

Նրա համար համբաւ ստեղծողը եղել է նրա մանկավարժական, բայց առաւելապէս նրա գրական գործունէութիւնը: Այս ասպարէզում շատ բեղմնաւոր է եղել նրա եռանդը: Մի շարք տարիներ վարել է «Արարատ» ամսագրի խմբագրութիւնը, և այդ տարիները գուցէ լաւագոյններն են Էջմիածնի պաշտօնական ամսագրի երկարամեայ ժգոյն կեանքի մէջ: Բայց աւելի կարևոր եղել է նրա մատենագրական-բանասիրական գործունէութիւնը: Հրատարակել է մի շարք ձեռագրեր գիտական բացատրութիւններով և ընդարձակ ուսումնասիրութիւններով և այդ հրատարակութիւններից մի երկուսը կարևոր նշանակութիւն են ստացել և եւրոպական գիտնականների շրջանում: Այսպէս օրինակ, Իրի-

նէօսի գործի հայերէն հին թարգմանութեան հրատարակութիւնը գերմաներէն նոր թարգմանութեան հետ, որ կատարել է Կարապետ եպիսկոպոսը իր աշակերտ Երուանդ վարդապետի աշխատակցութեամբ։

Ինքնուրոյն աշխատասիրութիւնների մէջ Կարապետ եպիսկոպոսը երեւան է գալիս իբրեւ աշակերտ այն գերմանական աստուածաբանական դպրոցի, որի փայլուն ներկայացուցիչն է ուսուցչապետ Հառնակը, մի դպրոց, որ զինուած է քննադատական լուրջ ուղղութեամբ և որ աւանդութիւնների, առասպելների, զրոյցների մէջ պատմական իրողութիւններն է գտնում և լուսաբանում։ Կարապետ եպիսկոպոսը գերմանական այդ դպրոցի չափ համարձակ ու խիզախ չէր և հարկաւ չէր էլ կարող լինել իբրեւ եկեղեցու պաշտօնեայ։ Բայց և այնպէս, նա առաջինն էր, որ քննող ու վերլուծող աստուածաբանութեան տարրերը մտցրեց մեր մէջ։ Այս կողմից նա անկասկած առաջադէմ երեւոյթ էր, եթէ համեմատենք նրան հայ աստուածաբանների և մասնաւորապէս նրա ուսուցիչ Օրմանեանի հետ։ Բաւական է ծանօթանալ հէնց միմիայն «Հայ եկեղեցւոյ պատմութիւն» աշխատութեան, որ Կարապետ եպիսկոպոսը գրել է իբրեւ դասագիրք, բայց, տարաբախտաբար, չէ կարողացել վերջացնել։

Սակայն Կարապետ եպիսկոպոսի ուշադրութիւնը միշտ եկեղեցական գրականութեան և աստուածաբանական հարցերի վրայ բեւեռուած չը մնաց։ Նրա վերջին աշխատութիւնը «Տոփեանք և Մելիք-Շահնազարեանք» մի գնահատելի, և լուրջ և պատմական ուսումնասիրութիւն է, որ ապացոյց է, թէ որքան լաւ պատրաստուած էր և որքան լայն քննական կարողութիւններով օժտուած մի բեղմնաւոր ոյժ էր Կարապետ եպիսկոպոսը և հայ պատմագրութեան համար։

Այսպիսով Կարապետ եպիսկոպոսի մահը մի խոշոր կորուստ է և հայագիտութեան համար։

---

## ՍԵԴՐԱԿ ՄԱՆԴԻՆԵԱՆ

Նոյեմբերի 28-ին Թիֆլիսում վախճանուեց, 72 տարեկան հասակում հայ մանկավարժութեան առաջնակարգ դէմքերից մէկը, Սեդրակ Մանդինեան։ Նրա գործունէութիւնը ամբողջովին անցեալին է պատկանում։ Չնայելով երկար տարիներից ի վեր է որ ծանր հիւանդութիւնը հանդուցեալին հեռացրել էր հայ դըպրոցից, բայց և այնպէս նրա մահը մի շատ զգալի կորուստ է հայ հասարակութեան համար։

Մանդինեանը պատկանում է 60-ական թուականների մեր այն սերնդին, որի անձնազոհ ջանքերով և գաղափարական անշահախնդրութեամբ ստեղծուեցին հայ ժողովրդի ազգային-կուլտուրական խոշոր յենարանները — մամուլ, թատրոն և գեղարուեստ։ Ծընւած լինելով Թիֆլիսում, Մանդինեանը կրթութիւն ստացաւ Լազարեան ճեմարանում, որ 50—60-ական թուականներին հայ ժողովրդի լուսատու փարոսն էր և ազգային գործիչների օրրանը։

Այդ մեծագոյն դպրոցի աւանդութիւններով զինուած երիտասարդը մտնում է կեանքի մէջ և վաթսունական թուականներին Թիֆլիսում աշխատող թարմ ոյժերից մէկն էր, ասպարէզ ընտրելով հայկական թատրոն, որի շնորհալի և եռանդոտ ծառայողներից մէկը դարձաւ երկար ժամանակ։

Եօթանասնական թուականների սկզբին Մանդինեանը թողնում է թատրոնական աշխարհը և յանձն է առնում աւելի մի մեծ առաքելութիւն, որի նպատակն էր հայ դպրոցը։ Դպրոցներ մենք այդ ժամանակ բաւական ունէինք, բայց նրանց մէջ տիրապետում էր հին խալիֆայական մանկավարժութիւնը։

Պէտք էր վերանորոգել այդ կրթական հիմնարկութիւնները, մտցնել նրանց մէջ եւրոպական մանկավարժութիւն... Այս մի մեծ, կեանքի և մահուան նշանակութիւն ունեցող պահանջ էր։ Մանդինեանին էր վիճակուում այդ շարժման առաջին ռահվիրան լինել։ Գերմանիայից նա վերադառնում է հայրենիք, բերելով իր հետ գիտական մանկավարժութիւնը և իրան յատուկ եռանդով սկսում է թէ ժողովրդականացնել իր ձեռք բերած գիտութիւնը և թէ գործադրել դպրոցական աշխարհում։

Առաջին անգամ Մանդինեանն է որ սիստեմաբար հիմք է դնում մանկավարժական մատենագիտական գրականութեան։ 1876 և յաջորդ թուականներին Աբգար Յովհաննիսեանի հրատարակութեամբ լոյս տեսան նրա մի շարք գրուածքները. — «Դպրոցական սահմանադրութիւն», «Ուսուցման եղանակ», «Կրօնք» և այլն։ Այնուհետև նրա աշխատութիւնները, նուիրուած հայ դպրոցական կարիքներին, լոյս էին տեսնում պարբերական հրատարակութիւնների մէջ։ Դպրոցավարական ուղղութիւնները, մեզանում սկզբից վաղ սկսեցին ընդհարուել իրար հետ, առաջացնելով յաճախ սուր բանակռիւներ։ Մանդինեանը այդ կռիւների մէջ միշտ մի առանձին կողմ էր կազմում։ Յայտնի է, թէ որքան տաք ու կրքոտ բանակռիւներ ծագեցին երկար ու ձիգ տարիներ շարունակուեցին նրա և Ղազարոս Աղայեանի մէջ։

Մանդինեանը փորձել է իր ոյժերը և դասագրքեր կազմելու, բայց այս ասպարէզում շատ մեծ յաջողութիւն չէ ունեցել։ Մի ժամանակ շատ յայտնի էին նրա կազմած դասագրքերը — «Նահապետական և Հայրենի աշխարհ» «Ազգային դիւցազնական աշխարհ», Բայց դրանք երկար չը պահուեցին դպրոցներում և մոռացուեցին։ Մի քանի տարի առաջ նա տպագրեց այբբենարան և ռուսաց լեզուի դասագիրք, որոնք նոյնպէս յաջողութիւն չունեցան։

Անհամեմատ մեծ նշանակութիւն ստացան նրա գործնական պարապմունքները հայ դպրոցներում։ Երկար ժամանակ նա պաշտօնավարել է Ներսիսեան դպրոցում և Էջմիածնի ճեմարանում, կարճ ժամանակով տեսուչ է եղել Թիֆլիսի, Ղարաբաղի Երևանի թեմական դպրոցներում ու ամեն տեղ նրա գործունէութիւնը եղել է բեղմնաւոր... Նա պատրաստել է բազմաթիւ ուսուցիչներ մեր տարրական դպրոցների համար։

Յատկապէս պատուաւոր դեր կատարել է Մանդինեանը Ղարաբաղի թեմական դպրոցի պատմութեան մէջ։ Թէև միայն մի

տարի է նա այստեղ գործել իբրև տեսուչ, բայց այդ մի տարին ամբողջ մի գարագլուխ է կազմում, առաջադիմութեան մի շատ փայլուն շրջան։

Մանդինեանը այն տեսակ գործիչներից չէր, որոնք կարողանում են փակուել իրանց մասնագիտութեան մէջ և խուլ մնալ կեանքի հոսանքների դիմաց։ Իր ազգային քաղաքական դաւանանքներով նա ներկայացուցիչ էր մի որոշ աշխարհայեացքի և պայքարում էր հակադիր հոսանքների դէմ։

Մինչև իր կեանքի վերջն էլ նա պահեց իր մէջ վառ հետաքրքրութիւն հասարակական հարցերի վերաբերմամբ և շատ յաճախ արձագանք էր տալիս օրուայ հարցերին իր յօդուածներով, որոնք տպագրւում էին զանազան թերթերի մէջ։

Այսպիսի անխոնջ գործիչներ, տակուին համոզմունքի տէր մարդիկ շատ չեն մեր իրականութեան մէջ։

Յանձին նրա գերեզման իջաւ հայ վաստակաւոր և պատկառելի գործիչներից աւագագոյնը։

## ԳԹՈՒԹԵԱՆ ՆԱՀԱՏԱԿՆԵՐ

Պատերազմի, գաղթականութեան առաջացրած մարդկային տառապանքները՝ կարիքների մի ամբողջ ծով են տարածել հասարակութեան առաջ։ Տեսակ տեսակ հիւանդութիւնները, ահռելի համաճարակների կերպարանքով, հազարաւոր ու բիւրաւոր զոհեր են տանում։ Նրանց դէմ կազմակերպուող բժշկական օգնութիւնը անզօր կը լինէր իրական կռիւ մղելու, եթէ օգնութեան չհասնէին գաղափարական անձնազոհութեամբ լցուած անհատներ, գլխաւորապէս երիտասարդութիւնից։ Մեծ է մանաւանդ կնոջ դերը գթութեան, քնքշութեան, սիրոյ պտուղի այնքան կարօտ մեր դառն ժամանակում։ Անթիւ ու անհամար են այն աննկատելի, համեստ գործչուհիները, որոնք մտնում են ամէն խուչ և գնում են թեթևացնելու վիրաւորուած զինուորների, անօգնական փախստականների տանջանքները։ Յաճախ, շատ յաճախ այդ աննկատելի հերոսուհիները զոհ են գնում իրանց գթասրտական զգացմունքին, վարակուելով իրանց պաշտպանած խեղճերի հիւանդութիւնից։ Սուրբ են մարդասիրութեան պարտքի այդ նահատակները և նրանց անունները պարծանք են այն հասարակութիւնների համար, որոնց միջից դուրս են գալիս նրանք։

Հայ ժողովուրդն էլ իրաւունք ունի պարծենալու իր այդ տեսակ հերոսուհիներով։ Վերջին ժամանակներս գթութեան գործի մէջ վարակուեցին և գերեզման իջան 1) օր. Սաթենիկ Օհանջանեան (Նոյեմբերի 1-ից Ախալցխայից), 2) տ. Վարսենիկ Մելիք-Ստեփանեան, Զանգեզուրի գաւառի Աղջաձոր գիւղից (Նոյեմբերի 17-ին) և 7)՝ օր. Աշխէն Արամեան, լօռեցի (Նոյեմբերի 27-ին)։

Գլուխ ենք իջեցնում այդ երեք անձնազոհ հերոսուհիների սուրբ յիշատակի առջև։

## ԳՐԻԳՈՐ ԶՕՀՐԱՊ

Վերջերս թերթերը մի քանի անգամ գուժեցին տաճկահայ նշանաւոր հեղինակ, փաստաբան և հասարակական գործիչ Գրիգոր Զօհրապի մահը, որ իրօք շատ կսկծալի է, հէնց նաև այն պատճառով, որ թուրք կառավարութեան զոհերը իսկական նահատակներ են՝ խղճի կամ մտքի ազատութեան համար ընկած։

Բայց մի բացառիկ հանգամանք ուղղակի ողբերգական է դարձնում հազիւ 54 տարին լրացած այդ մարդու անժամանակ վախճանը։ Նա Օսմանեան պառլամենտի ականաւոր պատգամաւորներից մէկն էր, և դահիճներին հրաման տուողները դեռ երէկ նրա կողքին նստած՝ քաղաքացիական իրաւունքների հաւասարութեան պաշտպան էին յորջորջւում իրենց. իսկ այսօր այդ միևնոյն ընկերակիցները վատութեամբ մորթել են տալիս նրան, որ սքանչելի հռետոր էր։



Տեսէք ընտրական պայքարի ժամանակ ինչպէս է նա բնորոշում հայ բուրժուա պահպանողականներին, որոնց «մենծ աղայական» կուսակցութիւն է անուանում. «մենծ աղան չար մարդ մը չէ. կը բաւէ իր անձնասիրութիւնը շոյել՝ օգտուելու համար իրմէ. կղերը ի վաղուց անոր շահագործած է զինքը, ինքն ալ կղերը . . .»

Զօհրապի ճարտասանութեանն են պարտական իրենց կեանքերը նոյն իսկ բազմաթիւ թուրքեր, որոնց նա, իբր հմուտ փաստաբան, ազատել է բանտից, աքսորից, մահից։ Մահմեդական ժողովրդին ցոյց տուած նրա մարդասիրական երկարամեայ գործունէութիւնը չյուզեց թուրք կառավարութեան խիղճը և նա ձեռք չը տար այդ մարդուն։ Ամբողջ տաճիկ ազգը Պոլսում պարտաւորուեց, չը գտաւ մի խօսք՝ պաշտպանելու իր պաշտպանին, որը բոլորովին անմեղ էր։ Այսպիսով Զօհրապի մահը ծանրանում է ոչ միայն երիտասարդ թուրքերի խղճի վրայ, այլև ամբողջ թուրք ժողովրդի։

Իբրև հեղինակ եւ նա մեծ դեր է կատարել իր ընկերակիցների հետ՝ Ե. Փէշեանի, Լ. Բաշալեանի, Ա. Արփիարեանի և ուրիշների հետ 80-ական թուականներից հիմք է դրել պոլսահայ գրականութեան մէջ իրապաշտութեան (ռէալիզմ)։ Այդ ուղղութեան պարբերականներն էին «Արևելք», «Հայրենիք» և «Մասիս», որոնց մէջ Գ. Զօհրապ տպագրել է իր նորավէպերը։

Առաջին հայեացքից թւում է, թէ նրա նիւթերը միօրինակ են, քանի որ սէրն է գերակշռում նրա պատմուածքների մէջ. բայց այդ մասին մի փոքր բացատրութիւն։ Նախ՝ նրա ցուցադրած սէրը բազմազան է. հեշտամոլ, կեղծ, անկեղծ, օրինաւոր, ապօրինի, անպարկեշտ, բանաստեղծական, վայրագ. ամէն տեսակ սէր է նկարագրում նա։ Երկրորդ՝ ֆրանսական գրականութեան ազդեցութիւնն է մասամբ էլ պատճառ, որ Զօհրապն այդքան զբաղւում է սիրոյ յարաբերական առեղծուածով։ Եւ յետոյ չըպէտք է մոռանալ, որ տաճկական վերջին սահմանադրութիւնից առաջ գրաքննիչը ոչ մի այլ նիւթ համարեա թոյլ չէր տալիս հեղինակներին։ Սակայն Զօհրապն ունի նաև կեղծ բարոյականութեան, դրամի ամբարտաւանութեան, ինչպէս և կաթոլիկների կրօնական անհանդուրժողութեան դէմ ուղղած պատկերներ։ Ամէն տեղ նա հանդէս է բերել Պոլսի կեանքը գիտելու այնպիսի սրատես աչք և տեսածները սեղմ և դիպուկ ճկունութեամբ արտայայտելու այնպիսի շնորհք, որ այդ տեսակէտով նրա հետ չէ կարող մրցել մեր վիպագիր հեղինակներից ոչ մէկը, թէ տաճկահայ և թէ ռուսահայ։

Նուազ արժէքաւոր չեն նաև պոլսահայ գրական դէմքերի մասին տուած նրա քննադատականները, որոնք նուրբ վերլուծելու, բնորոշելու մեծ կարողութիւնը ցոյց տալուց զատ՝ արուեստի արտադրութեանց հմայք ունին իրենց արտասովոր գեղեցկութեան շնորհիւ։

Եւ ամէն տեղ, լինի հրապարակախօսական յօդուածների, լինի ճառերի, պատմուածքների թէ գրախօսականների մէջ՝ թափանցում է Զօհրապի անձնական ոճը, որ կուռ է, կորովի և միաժամանակ քնարական նրբանքով լի։

Գրիգոր Զօհրապը մեր ամենանշանաւոր հեղինակն է. այս պատճառով էլ նրա երկերը վաղ թէ ուշ պիտի յեղաշրջեն գրելու արուեստի մասին ունեցած մեր հնացած հասկացողութիւնները։

Մի ուրիշ անգամ Զօհրապի մասին կը տանք ընդարձակ և լուրջ ուսումնասիրութիւն։

Մ. Մասէհեան

## ԿԱՐԱՊԵՏ ԿՈՒՍԻԿԵԱՆ

Հեռագիրը լուր բերեց, որ Մոսկուայում դեկտեմբերի 12-ին վախճանուեց Լազարեան ճեմարանի ուսուցիչ Կարապետ Կուսիկեանը։

Հանգուցեալը ծնուել է Արմաւիր աւանում և իր ուսումն ստացել էր Լազարեան ճեմարանում, ուր և մնաց, ուսումն աւարտելուց յետոյ իբրև հայոց լեզուի ուսուցիչ։ Այս պաշտօնը նա վարել է երկար տարիներ և միշտ աչքի է ընկել իր բարեխղճութեամբ։ Միաժամանակ նա շատ եռանդուն մասնակցութիւն ունէր Մոսկուայի հայ գաղութի հասարակական գործերի մէջ։

Հանգուցեալը վաստակաւոր էր և հայ գրականութեան ասպարէզում։ Նրա գրչին են պատկանում մի քանի գրական-քննադատական ուսումնասիրութիւններ, որոնց մէջ լուսաբանւում են գլխաւորապէս վաթսունական թուականների մեր գրական հասարակական շարժումները (Նազարեան, Նալբանդեան, Շահազիզ, Գամառ-Քաթիպայ)։ Իր գործունէութեան ընթացքում հանգուցեալը հաւատարիմ է մնացել հասարակական լաւագոյն, առաջաւոր իդէալներին։

Մեր խորին վշտակցութիւնն ենք յայտնում ազնիւ գործչի մահուան առիթով...

# Գեղարուեստ

## Բարձրից

Իմ բարի սրտի էն մեծ խոհերից,
Էն մեծ խոհերի անհուն խորերից՝
Կամեցաւ՝ ելաւ իմ հզօր հոգին,
Որ բարձրից նայի Աստծու աշխարհքին։

Ու պայծառ ցոլաց դէպ վերին այեր՝
Մարդկային ամեն հընարքներից վեր,
Վե՛ր ամեն շուքից և շամանդաղից՝
Մինչև լուսեղէն ոլորտն անթախիծ։

Ու իր հարազատ բարձունքիցը լոյս՝
Անչար, անաչառ, անդորր ու անյոյզ՝
Պարզ, ամենատես հայեացքովը նա
Ճառագեց ներքև՝ աշխարհքի վըրայ։

Տեսաւ աշխարհքը՝ գեղեցի՛կ, անվե՛րջ,
Եւ հայրենիքներն անձուկ նըրա մէջ,
Եւ աստուածները նըրանց զանազան,
Եւ սուրբերը խիստ, խըրոխտ ու դաժան։

Տեսաւ՝ ուտում են ամենքն ամենքին.
Ամեն հայրենիք իրեն զաւակին,
Եւ իր պաշտողին ամեն մի Աստուած,
Եւ կեանքը տանջանք, ցաւ համատարած։

Ու ոչ մի երկիր չըկայ հանգչելու—
Խոր, արարչական հանգիստն անխըռով,
Ու ոչ մի անկիւն չը կայ շընչելու
Շունչն Աստուածային՝ լի անվերջ սիրով...

Անպատում վըշտով վերըստին նայեց
Իմ էս մեծ սըրտին՝ աշխարհքից էլ մեծ,—
Անսահման աշխարհք, և սէր ընդհանուր,
Եւ մարդը ուրախ, և երգ ամենուր...

Ու իջաւ նորից էնտեղ հանգչելու—
Խոր, արարչական հանգիստն անխըռով,
Էնտեղ հանգչելու, էնտեղ շընչելու
Էն մեծ խոհերով, էն անվերջ սիրով...

Յովհ. Թումանեան

## ԵՐԵԽԱՅ

(Նուէր Ա-իս յիշատակին և նրա մօրը)

Կարծես մրրիկն անցաւ այդ գիւղից։ Զարկեց ու անցաւ։ Այնպէս աղմկայոյզ էր ու աւերիչ այդ տարերքը, որ զարկեց գիւղին ու գնաց։ Եւ ահա նրա գունդը դաշտի հեռուները դեռ սևին է տալիս։

Ահա վերջին անգամ սև կէտի պէս երերաց նա և անհետացաւ հորիզոնում։ Դաշտը մնաց։ Հեռուները կլանեցին վերջին շունչը և նա էլ կորաւ։ Եւ գիւղի վրայ չոքեց մի զարհուրելի լռութիւն։ Ճամբի փոշին կամաց կամաց ծալեց իր թևերը խրճիթների, ճամբի քարերի և ջրի ու արեան կեղտոտ լճակների վրայ։ Ճանճերը բաց արին իրենց անմիտ հանդէսը ցիրուցան դիակների վրայ, որ տձև փալասների պէս անփոյթ փռուել էին դռների առջև, ճամբի վրայ, կտուրներին։

Հէնց գիւղամիջին, աղբրի մօտ տարօրէն դիրքերով թափուած էր դիակների մի խումբ։

Ահա մէկը, խնկագոյն դէմքը թաղել է ցեխի մէջ՝ ընկել է բերնաքիվար, թևերը ծալել է փորի տակ։ Աղբրի բարակ ջրի մի ժապաւէն քաշում տանում է նրա արիւնը։ Միւսը պառկած է մէջքի վրայ, թևերն ու ոտները չռել, բաց է արել բերանը և ապակի աչքերը գամել է երկնքին։ Խիստ է նրա հայեացքը և սաստիչ։ Միւսներն ընկած են մէջք մէջքի, իրար վրայ, ոտն ու ծոց։ Մի չոր պառաւ ձեռ՝ մատները չռած՝ տատասկի պէս ցցուել է վեր և կարկառել դէպի երկինք։ Մանուածապատ երակները, կապտել են ուռել, ջղաձիգ մատները մագիլների պէս խրուել են կարծես մի աներևոյթ մարմնի մէջ։

Ժամանակը շարունակում է իր [illegible] գործը։ Արևը թեքւում է դէպի մայր։ Բայց գիւղը իր տեսքը չի փոխում։ Մեռնողները մեռել են, խրճիթների դռները կիսափակ, կամ կոտրած ու բաց, աւերածների գերանները որը ցից, որը գետնամած՝ ընդունել են միևնոյն անշարժ դիրքը և սառել, մնացել։ Եւ ահա մի խրճթի դռան առջև ընկած է մի մատաղ կին։ Հազիւ քսաներեք տարեկան կը լինի։ Սևահեր է, խոշոր աչքերը չոր ու գունատ դէմքին՝ փայլում են արտասովոր ջերմով։ Նա վիրաւոր է. մէջքին հարուածել են սրով, և արիւնը գնում է։ Ահա տնքաց, նուաց և վեր կացաւ։ Մի քանի քայլ արաւ, բայց նորից երերաց ու նստեց մօտի քարին։ Նայեց աղբրի մօտ թափած դիակներին և յանկարծ սթափուեց։ Յիշեց՞։ Կոտորած էր եղել, ինքը քնած չէ, այլ վիրաւոր։ Ուզեց աղաղակել՝ կոկորդը միայն խզզաց։ Յանկարծ օձի կծածի պէս վեր թռաւ։ Ո՞ւր է իր երեխան... Նրան թողել էր ախոռի մսուրքում։ Ականջները թշշալ սկսեցին։ Շարժուեց դէպի ներս և երերալով, պատերը բռնած՝ մտաւ ախոռը, մօտեցաւ մսուր-

իմացաւ, որ իր հանգստութիւնը նրանից էր, որ մի բանի էր սպասում։ Բայց յետոյ հաշիւ տուեց, թէ ինչի՞ էր սպասում։ Նա պիտի մեռնի. պարզ է։ Իր շուրջը մահն է թագաւորում։ Ահա նա յայտնի սողում է դէպի ինքը։ Դողալով երեխին քաշեց, կրցրեց կրծքին, և զգաց, որ եթէ նա պատահմամբ հեռու գլորւ ու ինքը էլ անկարող պիտի լինի նրան մօտենալու։

Հոգեվարքն սկսուեց։ Նա կորցրեց իրան և սկսեց զառանցել։

Եւ երբ մի անգամ ուշը տեղն եկաւ՝ նա երեխի թաթիկը դրեց բերանը։ Բայց շուտով կորցրեց իրան, բաց թողեց թաթիկը և թեք ցցելով երեխի հակառակ կողմը՝ սկսեց այնտեղ որոնել երեխին։

Երկու ժամից յետոյ նա մեռաւ։ Եւ մէջքի վրայ պառկած՝ դէմքը գունատ, խոշոր սառած աչքերը երկնքին ուղղած՝ նա էլ սկսեց անշարժ դիտել մահի սարսափը։

Բայց երեխան շարունակում էր իր անգիտակից, երջանիկ խաղը այդ ահռելի մահուան հրապարակում, նա ժպտում էր, ծիծաղում, գլգլում, ճչում։ Եւ այդ ծով լռութեան մէջ լսւում էր նրա մի անհասկանալի բառը. «ընդիՃ . . .»։

Ահեղ էր մահը, ուժեղ, բայց աւելի ուժեղ էր այդ անմեղ երեխան, այդ մանուկ իմաստունը, որին ոչինչ, ոչինչ չէր կարող խռովել։

Վերցրեց մի խոտ, դրեց բերանը, բայց կոշտութիւն զգալով, խեղճին դէմքը ծռեց և բերնից թափեց խոտը։ Յետոյ ցուցամատը դրեց բերանը։ Դա ախորժակի բերեց նրան։ Հիմա ամբողջ մատը կոխեց բերանը և թշիկներն ուռեցնելով սկսեց կենտրոնացած և ագահաբար ծծել։

Արևը հաճելի լոյս ու ջերմութիւն էր սփռում նրա լօշ-լօշ ականջների, ոսկի մազերի, կլոր ոտիկների վրայ։ Նա ինքնագոհ ծծում էր և մռմռում. «Նիամ, նիամ, նիամ»։

Ոչ մենակութիւն էր զգում նա, ոչ վտանգ, ոչ կոտորած, ոչ մահ։ Եւ այդ մահու թագաւորութեան մէջ նա նստած էր իբրև թագաւորաց մանուկ թագաւոր։

Եւ թագաւորո՞ւմ էր։

«Ընդի՞ի», ծղրտաց նա մատը բերնից հանելով։ Եւ յանկարծ նայեց արևի կողմը։ Արևի ճառագայթները ծակեցին նրա աչքերը, և նա աչքերը փակեց։ Երկու կաթիլ մաքուր արցունք կախուեցին նրա թարթիչներից։

Բայց մատի քաղցրութիւնը էլի միտն ընկաւ։

Այդ նշան էր, որ նա սկսում է քաղց զգալ, նորից մատը կոխեց բերանը, բայց քաղցը զգացրեց, որ մատի մէջ սնունդ չըկայ։ Նա աւելի լրջացաւ և ծծելով ու բերանը չփչփացնելով սկսեց մռմռալ։

Արդէն լաց էր լինում։ Բնազդաբար շրջուեց և ընկաւ մէջքի վրայ. գիրուկ ու մերկ ոտիկները բարձրացան վեր։ Յետոյ շուռ եկաւ դէպի մօր կուրծքը և կաթի հոտն առնելով գտաւ մօր ստինքը, բերանն առաւ և սկսեց ծծել։

Ծծում էր և բամբակի թաթիկներով խաղում մօր ստինքի հետ։

Այդպէս երկար ծծեց նա, յետոյ դադարեց։ Յետոյ երկար թաթիկները վրայ եկան, գոցեցին նրա խաղող աչքերը, և նա հանգիստ քնեց թաթիկը խաղաղութեամբ և հզօր անմեղութեամբ դրած մօր ստինքի վրայ։

Դ. Դեմիրճեան

## Խ ր ո ն ի կ ո ն

Վ ի լ ս ո ն և Հ ի լ ամերիկացիները Ամերիկայից եկել են Կովկաս տաճկահայ փախստականների կենցաղը ուսումնասիրելու։ Սոքա դեկտեմբերի 9-ին ներկայացան Փոխարքային ու մեկնեցին Վան, բայց մտադիր են և Միջագետք անցնել, այնտեղ աքսորուած հայերին ևս օգնելու։ Վիլսոնը, որ երկար տարիներ եղել է Պարսկաստանում, լաւ հայերէն է խօսում։

— Ամերիկահայ բժշկապետներ՝ Յովսէփեան և Նիւտոն-խան Ազգապետեան իրենց ամուսինների հետ ուղևորւում են Վան օգնելու հայ փախստականներին։

— Ամերիկահայ գործիչ Գրիգորեանը Թիֆլիս է եկել ազգային գործերին ծանօթանալու։

— Անգլիոյ պարլամենտի անդամ Վիլսոնը մի ամիս առաջ յօգուտ գաղթականների փոխադրել էր 72000 ռ. քաղաքագլուխ Ա. Խատիսեանին, այժմ ևս 46050 ռ. նոյն նպատակի համար։

— Լոնդոնում կազմուել է մի յանձնաժողով, որի կազմի մէջ մտնում են Քենդրբերեան թեմի եպիսկոպոսը, Ռուսաց դեսպան Բենկենդորֆը, Լորդ Կրոմեր և ուրիշ պատուաւոր անձինք հայ փախստականներին օգնութիւն հասնելու։

— Ն ո ւ է ր ն ե ր.—Յովսէփ Մանթաշեանը նուիրել է յօգուտ հայ փախստականների 30000 ռ., որ յանձնել է Ալ. Խատիսեանին։ Իսկ Լեոն Մանթաշեանը 5000 Գայեանեան դպրոցին։

Յօգուտ Հայաստանի վերաշինութեան գործի և Հայկական միլիցիայի պահպանութեան. — 1) Ամենայն Հայոց Վեհ. Կաթողիկոսի դիւանատանից Նորին Վեհափառութեան կարգադրութեամբ՝ 3000 ր., 2) Յանձնաժողովի նախագահ Դաւիթ խան Աւան Իւզբաշեանից՝ 7000 ր., 3) Թիֆլիսի քաղաքագլուխ Ալ. Խատիսեանից Յ. Մանթաշեանի գումարից «Тиф. Листокъ» լրագրի խմբագիր Խ. Խաչատրեանի միջոցով 1000 ր., 4) Պարիզից Պօղոս-փաշա Նուպարից, Վեհ. Կաթողիկոսի դիւանատան միջոցով 4000 ր., 5) «Тиф. листокъ» լրագրի խմբագրութիւնից Նպաստամատոյց Ընկ. միջոցով 300 ր., Ընդամենը 15300 ր.։

— Թագուհի և Միրզաջան Միրզաբէգեանները ի յիշատակ հանգուցեալ Գ. Միրզաբէգեանի նուիրել են Շամախու թեմական դպրոցին 125,000 ր.

— Հայուհեաց Բ. Ըն. Դեկտեմբերի 16—20 Ալշուագի գրպակում մագազինում կազմակերպուեց փախստականների ձեռագործ իրերի ցուցահանդէս, աշխատում էին փախստական կանայք։

— Հաշուապահների ընկերութիւնը Թիֆլիսում բաց է անում երրորդ փոխատու վարկի ընկերութիւն։

— Իշխանուհի Մ. Մ. Թումանեանի նախաձեռնութեամբ Թիֆլիսում Մելիք Ազարեանի տանը բացուած է կօօպերատիւ կօշկանոց, որտեղ միմիայն գաղթականներ են աշխատում։

— «Кавказское Слово» լրագրի հրատարակութեան համար կազմւում է ակցիոներական ընկերութիւն, որի երկու երրորդը 150,000 ռ. Լեոն Մանթաշեանինն է։

— Դեկտեմբերի 15-ից սկսուեցին Թիֆլիսի պոլիտեխնիկումի կառուցման աշխատանքները.

— Արմաւիրում բացուած է փախստականների համար հիւանդանոց 25 մահճակալով։

— Սևանում կախուել է աբեղայ Խորէն Մխիթարեանը։

## Կ. Հ. Բ. Ը-ԵԱՆ ԵՒ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԷԻ ՏԱՐԵԳԻՐ

Ներքին գործոց նախարարութեան կից կազմուած առանձին կանոնաժողովից որբանոցների համար ստացուել է Պետրոգրադի Հայոց Յանձնաժողովի միջոցով 42,625 ռ. Կենտ. Յանձնաժողովի նախագահ Ս. Յարութեանի միջոցով Լոնդոնի Հայոց Յանձնաժողովի նախագահ Վիլեամսից և պալատի նախագահից ստացուել է 37,312 ռ. հայ գաղթականների օգտին։

— Կ. Հ. Բ. Ընկ. նոյեմբերին ստացել է յօգուտ գաղթականների 1) Անյայտից 20 ռ., 2) Մանթաշեանի Բորջոմում գտնուած կալուածքի ծառայողներից 55 ռ. 60 կ., 3) Նիկոլա և Գրիգոր Նազարբէկովներից գնդապետ պոլկովնիկ Պետր Եգորովիչ Արէշեվի դագաղի վրայ պսակ դնելու փոխարէն 25 ռ., 4) Թիֆլիսի 1 փոխադ. վարկի ընկ. ծառայողներից 15 ռ. 5) Ալէքսէյ Իւանովիչ Կարակաշից 5 ր. 6) Սիմէօն Մատինեանից հիւանդանոցի օգտին 6 ռ. 20 կ. 7) Մ. Պ-ից 4 ռ. 8) Անյայտից 5 ռ. 9) Ան-

յայտ ափկնոջից 15 ռ. Սարգիս Գ. Յարութիւնեանի միջոցով՝ Արմենակ Յովհաննէսեանի պսակադրութեան հանդիսից 35 ռ. 10) Համբարձում Եսայեանից 100 ռ. 11) պ. Ս. Պօղոսեանի ընտանեկան տօնախմբութեան ժամանակ ժողոված 35 ր. 12) Գայիանէ Կուխմջիբաշեանից 5ր. 13) Զաքաթալայի ճիւղից 200 ռ. 14) Կարսուրգանից բժ. Ն. Մ. Տէրաէրեանից 25 ռ. 15) Նախիջեւանից Սանեթան Մելիք-Գրիգորեանից (Աստապատ գիւղ) 25 ռ. 16) Կիևի շրջ. Սկվերա կայարանից Սահակ Գէորգեան Մէլիքսեթեկեանից 30 ռ. 17) Նոյն անձից 20 ռ. 18) Դերբենտից Կոնստանտին Վաղինէչ Ղազարեանից 300 ռ. 19) Զաքաթալայի ճիւղից 200 ռ. 20) Տոմսկից տեխնոլոգիական ինստիտուտի գերեկոյթից 326 ռ. 93 կ.

— Խմբագրութիւնս շնորհակալութեամբ ստացաւ փախստականների օգտին իշխ. Միքայէլ Թումանեանից 50 ր., Ստ. Փարեմուզեանից ամսիս 6-ին պրապորշչիկ Գրիգոր Շիրինեանի տանը կայացած հացկերոյթին հաւաքած 16 ր. և Ե. Ազարէկեանից իր ձեռքի աշխատավարձը 60 կոպ, ընդամենը 66 ռ. 60 կ. որ յանձնեց Կ. Հ. Բ. Ընկերութեան:

— Կ. Հ. Բ. Ընկերութեան կից բացուած է «Աշխատանքի բիւրօ» գաղթականներին գործ հայթայթելու համար: Բիւրօյի գրասենեակը գտնւում է Պուշկինսկի պատամ № 20 և բաց է առաւօտ. ժ. 10—3, և երեկ. 7—8:

— Կ. Հ. Բ. Ընկ. իր տան ներքին յարկում բաց է արել կազմատուն, տաղաղծարան և ծրարնոց, որտեղ աշխատում են փախստականները: Այդ կազմակերպութիւնը յանձնուած է իշխ. Մ. Թումանեանին և ինժեներ Յ. Ա. Ակունեանին: Կազմատունը ընդունում է կազմարարական ամեն տեսակ պատուէրներ:

— Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը ցանկանալով ընդառաջ գալ անբերրութիւնից կամ պատերազմի պատճառով վնասուած հայ գիւղացութեանը՝ ուղարկեց մի անկետա իր բոլոր ճիւղերին, խնդրելով շուտափոյթ տեղեկութիւն տալ՝ ա) ինչ են սովի պատճառները, որքան ալիւր է հարկաւոր մինչև և որքան ցորեն սերմացուի համար, քանի աշխատաւոր ունի իւրաքանչիւր ընտանիք և այլն: Այդ տեղեկութիւնները պատշաճաւոր համախօսականների միջոցով ստանալուց յետոյ՝ Խորհուրդը հոգալու է գիւղական համայնքների այդ կարիքները լրացնելու:

— Հ. Կ. Կոմիտէտը ի նկատի ունենալով, որ որբերի թիւը օրէցօր աւելանում է, որոշել է. 1) Բաց անել 3 նոր ապաստարան Թիֆլիսի շրջակայքում. 2) 1000 ռ. յատկացնել Նոր Բայազէտի ապաստարանին. 3) «Նպաստամատոյց»-ի որբանոցի կազմակերպութեան վրայ եղած ծախքերի համար 1500 ռ. կենտրոնավարութիւնից ստացած Պետական նպաստից:

— Հ. Կ. Կոմիտէտը դիմել է Քաղաքների միութեան Կովկասի լիազօրին, և խնդրել բանալ Կարսի շրջանում բժշկական և ֆելդշերական կայաններ, ի նկատի ունենալով որ տեղացւոց և փախստականների մէջ տարածւում են զանազան հիւանդութիւններ:

— Հ. Կ. Կոմիտէտը և Կ. Հ. Ընկ. Շատ անմխիթար տեղեկութիւններ են ստանում լիազօրներից գաւառներում գտնուած գաղթականների մասին. Ա. Կոծինեանը հաղորդում է, «Էջմիածնի շրջանում փախստականների վիճակը սարսափելի է. բժշկական օգնութիւն չկայ, գիւղերում հիւանդութիւններ տարածւում են սննդի, հագուստի պակասութիւններից բնակարանների անյարմարութիւններից, ալիւր չի ստացւում, եղածն էլ ծախւում է 4 ռ. փութը: Անհրաժեշտ է հիմնել սննդատու կայաններ և ալիւրի պահեստանոցներ: Օրերս Մարգարա գիւղում սովամահ են եղել երկու հոգի: Գաղթականներին արուող ալիւրից ցեխանման խմոր է ստացւում, որից առաջ են գալիս ստամոքսային հիւանդութիւններ:

Գ ր ա դ ա ր ա ն-ը ն թ ե ր ց ա ր ա ն ի ն նուէրներ սկսեալ սեպտեմբերից մինչև 1-ն դեկտ 1915 թ.

Վ. Խորէնի 1 գիրք, Թադ. Դանիէլեան 100, Ս. Գուլիշամբարեան 700, Շահան-Սիման 4. Մին. ա. ք. Տէր-Պետրոսեան, 11. Կոյս Հռիփսիմէ Թայրեան 22. Մար. Զաւարեան 10. Տիգրան Աթարէգեան 42. Ոստանիկ Յովհաննիսեան 3. Գրիգոր Մնացականեան 180. Լիզա Գալուստով 100. Յակ. Փանոսեան 2. Դ. Կորվին-Վէլեանիցկի 2. Եղիսաբէթ Թառումեան ա. Հեղինէ Առստամեանի միջոցով 273. Հեղինէ Արղարեան 2. Բագրատ Այվազեան 31. Յ. Դագրաշեան 4. Վ. Զանդագով ա. Հ. Առստամեանի միջոցով 40. ընդամենը 1535 կտոր գիրք:

— Մինչ 1-ն դեկտեմբերի 1915 ամի գրադարանն ունէր 17716 կտոր գիրք, որից ռուսերէն 10,016, հայերէն՝ 6000 և ֆրանսերէն 1700 կտոր: Բոլոր գրքերը գնահատուած են 14251 ր. 74 կ. և ապահովագրուած է 15000 րուբլով:

Ճ ի ւ ղ ե ր.— Ախալցխայի ճիւղը՝ քաղաքում դեկտեմբերի 29-ին և 30-ին կազմակերպում է ժողովարարութիւն յօգուտ Ախալցխայի տեղական հայ չքաւոր բնակիչների:

Սուրամի ճիւղը հաւաքել է 200 փութ ալիւր և ուղարկել Կարս:

Բաթումի ճիւղը տեղական ծխական դպրոցին միանուագ նպաստ է տուել 800 ռ.

Գորու ճիւղի վարչութիւնը դեկտեմբերի 9-ի տափերով միօրեայ ժողովարարութիւն կազմակերպելով յօգուտ փախստականների, ստացել է զուտ արդիւնք 221 ռ. 07 կ., որ ուղարկել է Նորին Վեհափառութեան ի տնօրինութիւն:

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ
Հրատարակութիւն Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ